ՊԻՈՆԵՐ
ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
№ 1
ՀՈՒՆՎԱՐ
1957 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 29-ՐԴ ՏԱՐԻ

# ԵՂԵՎԱՆԻ

ՀԱՄՈ ՍԱՀՅԱՆ

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

Անտառից եկած կանաչ եղևնին
Հիշում է կանաչ իր ընկերներին։

Արահետներն է հիշում ձյունի տակ,
Հիշում է բացատն ու բուքն սպիտակ։

Երկինքն է հիշում իր գլխի վերև
Եվ իր մայր անտառն ասեղնատերև։

Հովերն է հիշում նա գարնանային,
Որ իրեն այնպես օրորում էին։

Վաղորդյան ցողի գոհարն է հիշում
Եվ մայրամուտի թևերն արբեշում։

Հիշում է սոսափն ամեն մի ծառի,
Խարույկն է հիշում անտառապահի։

Հիշում է բոլորն ու չի ափսոսում,
Որ էլ անտառի երգը չի լսում։

Ինչո՞ւ ափսոսա, երբ իր թևերին
Գարունն է բերել երեխաներին։

Գարունն է բերել այս ձմռան օրով
Եվ տուն է մտել կանաչ շորերով։

Ե՞րբ է նա այսպես զուգվել, զարդարվել,
Եվ մարդկանց այսքան հրճվանք պատճառել։

Ե՞րբ է նա եղել այսքան երջանիկ
Ու ե՞րբ է տեսել այսքան խաղալիք։

Ե՞րբ են նրա մոտ այսքան մանուկներ
Երգել ու պարել մինչև ուշ գիշեր։

Զարդարանքներով, աստղերով իր պերճ
Կանգնել է ուրախ մանուկների մեջ։

Այնպես հպարտ է նայում աշխարհին,
Կարծես հենց ինքն է բերել Նոր տարին։





# ՇՈՒՇ ԳԵՏԻ ԱՓԻՆ

Ա. ԿՈՆՈՆՈՎ

Սիբիրում, Շուշ գետի ափին կանգնած է Շուշենսկոյե գյուղը։ Հին ժամանակ այդ գյուղի մասին շատ քչերը գիտեին. նա կորել էր անտառների ու ճահիճների մեջ, երկաթուղուց հեռու և ավելի հեռու՝ մեծ քաղաքներից։ Նույնիսկ նամակներ հազվագյուտ էին գալիս այնտեղ։

Գյուղի հենց ծայրին ապրում էր չքավոր գյուղացի Սոսիպատիչը։ Նա մի եղբորորդի ուներ՝ Ալեքսեյ անունով։ Բայց Սոսիպատիչը նրան Լյոշկա էր կանչում։

Սոսիպատիչը հաճախ գնում էր բադեր, նապաստակներ որսալու։ Նա Լյոշային չէր ուզում իր հետ տանել. փոքր էր դեռ։

Մի անգամ Լյոշան դրա պատճառով նույնիսկ լաց եղավ։ Իսկ Սոսիպատիչը, կարծես դիտավորյալ կերպով, ձգձգում էր որսի պատրաստությունը և չէր շտապում. երևում էր, որ սպասում էր ինչոր մեկին։ Լյոշան կանգնել էր նրա մոտ ու լաց էր լինում։ Այդ րոպեին նա այն աստիճան չէր սիրում Սոսիպատիչին, որ նրան նայել անգամ չէր ուզում և դեպի փողոցն էր նայում։ Այնտեղ երիցուկներն էին ծաղկել, և սագերն էին գրոմնում՝ այնքան խաղաղ փողոց էր դա։ Եվ այդ գյուղական փողոցում առանձնապես պարզ երևում էր քաղաքային սև պիջակով, հրացանն ուսին մի մարդ։ Նա արագ էր քայլում, երևի Սոսիպատիչի մոտ էր շտապում։

Լյոշան ձեռքի ափերը սեղմեց աչքերին, որպեսզի արցունքներն այնքան էլ շատ չգային։ Իսկ երբ երեսը բաց արեց, ապա ավելի ուժեղ սկսեց լաց լինել. Սոսիպատիչը պիջակով մարդուն ցույց էր տալիս նրան ու ծիծաղում էր։

— Նայիր, Իլյիչ, թե իմ ջահելը ի՜նչ դժբախտության մեջ է՝ նրան որսի չեն տանում։

Բայց այդ մարդը, որին Իլյիչ էին կոչում, լուրջ դեմք ընդունեց։

Այդ տեսնելով Սոսիպատիչն էլ դադարեց ծիծաղելուց և ասաց.

— Տղայի բախտը չի բանում, է՛լի։

— Չի՞ բանում,— հարցրեց Իլյիչը և շարունակեց նայել Լյոշային։

— Դե, դու ինքդ դատիր՝ սրան ո՞նց տանես անտառ։ Նա այնտեղ ոտքը կճղի։

— Չի ճղի, մենք արահետով կգնանք։

— Իսկ սալամբները հենց մեր արահետի վրա էլ կհավաքվեն, չէ՞,— ասաց Սոսիպատիչը, բայց էլ չշարունակեց վիճել։

Եվ Լյոշան իր կյանքում առաջին անգամ որսի գնաց։

Անտառում ցուրտ էր։ Իսկ երբ դուրս եկան բացատը, նորից փայլեց ջերմ արևգակը։ Բացատում աճում էր բարձր խոտը, և մեղուները բզզում էին։ Օդն այստեղ թանձր էր և լցված էր լաստենու, ծաղիկների, սոճու խեժի հիանալի բուրմունքով։



Մարդ ուղղակի չէր ուզում բացատից հեռանալ։ Հանկարծ Իլյիչն ասաց.

— Իսկ ես ինձ հետ գոտի չեմ վերցրել։ Այսօր ես չեմ կարողանա կրակել։

Լյոշան գիտեր, որ որսորդները պիջակի վրայից գոտի են կապում, որպեսզի սպանված թռչունները կախ տան։ Նա նայեց Սոսիպատրիչին՝ սա էլ առանց գոտու էր։ Լյոշան նույնիսկ կանգ առավ էլ ի՞նչ որս, եթե չեն կրակելու։

Իլյիչը նայեց նրան ու ծիծաղեց.

— Բախտդ չի՞ բերում։

Այդ միջոցին առջևում, թփերի վերևում ինչ-որ բան երևաց։ Իլյիչը վայրկենաբար ուսից պոկեց հրացանը և նշան բռնեց։ Անտառով մեկ երկար, դղրդալով որոտաց կրակոցը։

Իլյիչը ցած թողեց հրացանը և մեղավոր ձևով ասաց.

— Ա՜յ, չհամբերեցի... Եվ ինքս էլ չգիտեմ, թե ինչպես կրակեցի...

Իսկ Լյոշան ուրախացած առաջ վազեց։ Թփերի մեջ նա շուտով գտավ սպանված սալամբին։ Դրանից հետո սկսվեց իսկական որսը։ Երեկոյան դեմ որսորդները տանում էին երեքական սալամբ, իսկ մեկը, այն, որ Իլյիչը խփել էր ամենից առաջ, քարշ էր տալիս Լյոշան։

Երբ անտառից դուրս եկան, արևն արդեն մայր էր մտնում։ Դաշտում խոտը ծածկվել էր ցողով, սկսել էր սառել և միայն արահետը, որն օրվա ընթացքում արևից ջերմացել էր, դեռ տաք էր։ Լյոշան զարմանում էր դրա վրա և շարունակ բոբիկ ոտքերով խոտերի վրայից վազում էր դեպի արահետը։

Հանկարծ Իլյիչը բռնեց նրա ուսը և ցույց տվեց դեպի Շուշ գետը՝ այնտեղ, հեռո՜ւ-հեռվում վայրի կարապների մի երամ էր լողում։ Արևի հանգչող ճառագայթներից կարապները վարդագույն էին թվում, ինչպես երկնքից ընկած երկնային ամպը։

Իլյիչը երկար նայում էր նրանց... Հետո արևը թաքնվեց անտառի հետևը, և կարապներն անհետացան։

Տուն գնալու ժամանակն էր։

Տանը Լյոշան հարցրեց հորեղբորը, թե որտեղի՞ց էր Իլյիչը եկել Շուշենսկոյե։

—Նա իր կամքով չի եկել,—պատասխանեց Սոսիպատրիչը,— նրան ցարն է այստեղ աքսորել։

Դրանից հետո Լյոշան շատ անգամ էր գնում այն խրճիթի մոտ, որտեղ տեղավորվել էր Իլյիչը։ Բայց նա ամբողջ օրերով աշխատում էր՝ մինչև ուշ գիշեր կարդում ու գրում էր։ Եվ ոչ մի կերպ չէր կարելի կռահել, թե նա երբ է նորից որսի գնալու։

. . . Վրա հասավ ձմեռը, և Շուշ գետը ծածկվեց սառույցով։ Այժմ Իլյիչին հանդիպելն ավելի հեշտացավ. համարյա ամեն երեկո, աշխատանքից հոգնելով, նա գալիս էր գետի վրա չմուշկներով սահելու։ Այն տարիներին չմուշկները Շուշենսկոյեում արտասովոր բան էին։ Երեխաները նայեցին, նայեցին Իլյիչին և իրենք էլ սկսեցին փայտից չմուշկներ պատրաստել, որոնց տակ երկաթ էին ամրացնում։

Թեև ոչ միանգամից, բայց Սոսիպատրիչն էլ Լյոշայի համար փայտե չմուշկներ պատրաստեց։

Լյոշան շուտով չմուշկներն առած վազեց դեպի գետը։ Եվ ի՞նչ տեսավ՝ ամբողջ սառույցը ծածկվել էր ձյունակույտերով։ Գետի ափին կանգնել էին Շուշենսկոյեի երեխաները և չգիտեին ինչ անեն՝ սահելու տեղ չկար։

Այստեղ Լյոշան տեսավ, որ արագ քայլերով գետին էր մոտենում Իլյիչը։ Հիմա կհարցնի՝ «Նորի՞ց բախտդ չի բերել», — մտածեց Լյոշան։ Բայց Իլյիչը մոտեցավ, նայեց ձյանը, երեխաներին և ուրախ ասաց.

— Իսկ ի՞նչ կլինի, եթե մենք իսկական սահադաշտ սարքենք։

Եվ սկսեց ցույց տալ, թե այդ ինչպես է արվում։

Երեխաները գործի անցան՝ սկսեցին փորփրել ձյունը։ Շուտով ապագա սահադաշտի շուրջը սպիտակ պատեր բարձրացան։ Իսկ մեջտեղի սառույցը երեխաները ավելներով մաքրեցին։ Հետո գնացին անտառ, եղևնիներ կտրատեցին և դրանցով զարդարեցին ձյունե պատերը։

Երբ սահադաշտը պատրաստ էր, Իլյիչը սկսեց ամենափոքր երեխաներին սովորեցնել այնպես սահել, որ քթները չխփեին սառույցին։ Իսկ փոքրերից ամենափոքրը Լյոշան էր։ Դրա համար էլ Իլյիչը նրան մյուսներից ավելի շատ էր սովորեցնում. նրանք ձեռք-ձեռքի բռնած երկար ժամանակ վազում էին չմուշկներով։

Անցան շատ տարիներ։ Շուշենսկոյե գյուղը հայտնի դարձավ ամբողջ աշխարհին. բոլորը հիմա գիտեն, որ 1897 թվականին Վլադիմիր Իլյիչ Լենինը ցարական կառավարության կողմից աքսորվել է այդ գյուղը, որովհետև նա Պետերբուրգում հիմնել և գլխավորել էր «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միությունը»։ Երեք երկար տարիներ նա անց է կացրել հեռավոր աքսորում, Սիբիրի ամենախուլ անկյունում։

Այժմ Շուշենսկոյե գյուղն անճանաչելի է դարձել։

Գյուղի այն երեխաները, որոնք մի ժամանակ վազում էին փայտե չմուշկներով, վաղուց մեծացել են։ Հիմա նոր երեխաներ են սահում իրենց Շուշ գետի վրա։ Միայն թե նրանց չմուշկները իսկական են, լավ պողպատից։

Մի անգամ ձմեռը Շուշենսկոյե գյուղը եկավ մի բանվոր։ Նա մեծացել է այդ գյուղում, իսկ հիմա ապրում է քաղաքում, աշխատում է գործարանում։ Բայց նրա ընտանիքը գյուղում է ապրում։

Ահա, հանգստանալուց հետո, նա վերցրեց չմուշկները և որդու հետ միասին գնաց Շուշ գետի վրա սահելու։ Իսկ ճանապարհին առաջարկեց.

— Արի մրցենք։

— Արի,— պատասխանեց որդին, բայց մտքում ասաց. «Ո՞նց կարող է այս ծերուկը իմ հետևից հասնել»։

Հասան նրանք գետին, ամրացրին չմուշկները և սլացան սառցի վրայով՝ մրցելով իրար հետ։ Եվ հայրը անցավ որդուց։ Որդին շփոթվեց, նայեց հոր ոտքերին ու արտասանեց.

— Է՜... դե քո ոտքերը երկար են։

Հայրը ծիծաղեց.

— Հաղթում է ոչ թե նա, ում ոտքերը երկար են, այլ նա, ով ավելի արագաշարժ է։



Հետո նրանք նորից սկսեցին սղղալ, և նորից հայրն անցավ որդուց։ Եվ հաղթելով նրան, ասաց.

— Դու ինձ որտեղի՞ց հասնես։ Ինձ դեռ Լենինն է սովորեցրել չմուշկներով սղղալ։

Ու դրանից հետո նա պատմեց որդուն, թե ինչպես էր Շուշ գետի վրա պատրաստվել առաջին սահադաշտը։ Իսկ երբ բարձրացան ափը, ցույց տվեց այն տեղը, որտեղ մի ժամանակ կանգնել էր տայգա աքսորված Լենինը և նայել ազատ կարապների երամին։

Թարգմ. Վ. ԵՐԿԱՆՅԱՆ




Լ. ՔԱՋԱԶՆՈՒՆԻ

Նկ. ԳՐ. ԽԱՆՋՅԱՆԻ

Մուտքի մուգ, ծանր դուռը տնքալով ու ճռռալով ետ գնաց, և բակ դուրս թռավ մի պատանի՝ ձեռքին դահուկներ։ Նախանձով ու հրճվանքով լի աչքերը նրա վրա սևեռեց մի պուճուր տղա, որի գլխին գլխարկի վրայից փաթաթված էր չալպտուրիկ զոլավոր շարֆ։

Վիկտոր Տարասյուկն այսօր փորձում էր իր նոր դահուկները։ Նա հպարտ էր ու երջանիկ։ Պստիկ երեխաները չորս կողմից եկան, շրջապատեցին նրան։ Զննում էին դահուկները, երանի տալով նրան՝ հոգոց էին արձակում և իրենք իրենց մեջ տրտրվելով, հաճոյակից հայացքներ էին գցում Վիտկային։ Բայց բոլորովին իզուր. Վիկտորը շատ գործնական շարժումներով հարմարեցնում էր ամրակապերը, ոչ մի ուշադրություն չդարձնելով նրանց վրա։ Երեխաները բարձրաձայն հառաչում էին, քթներն աղմուկով վերև քաշում և այն է, պատրաստվում էին փոր-փոշման վերադառնալ նորից իրենց սառցաբլրակը, երբ մեկ էլ լսվեց.—

— Վիտկա-ա-ա՜...

Բոլորը միանգամից դարձան ձայնի կողմը։ Վիկտորը հանկարծակիի գալով ցնցվեց, և ձեռնոցները ձեռքից ցած ընկան։ Յուրկա Սոկոլը թևերը թափահարելով գարաժի տանիքից ցատկեց ձնակույտի վրա և ձյան մեջ թաղվելով, վազեց նրա մոտ։

— Ա՛յ, ի՜նչ եմ ասել, Վիտկա՛, գնեցին, հա՞։

Յուրկան արդեն նրա կողքին կանգնել ու հրճվանքով զննում էր դահուկները։

— Այ, ի՜նչ եմ ասել, յուղե՞լ ես, տուր հապա մի փորձեմ։

Վիտյան շփոթված նայեց Յուրկային, ապա երեխաներին, և պատասխանն ուշացնելով, կռացավ դեպի ձեռնոցները։ Նա իր նոր դահուկները ոչ ոքի չէր ուզում տալ։ Բայց Յուրկային չտալ չէր կարող։ Երեխաներից ում էլ ասես, կարող էր մերժել, իսկ Յուրկա Սոկոլին՝ ոչ։

— Գիտես... Յո՛ւր... ես հետո... առաջ ես քշեմ, հետո դու, լա՞վ... կմկմաց Վիտյան։

— Լա՛վ... — արագ համաձայնեց Սոկոլը,— քշի՛ր, մենակ թե երկար չքշես,

Վիտկան մի կերպ հասավ ցանկապատին, որի վրա մի անցք կար մոտակա լորենու ծառուղին

դուրս գալու, և սրտապնդվելով գոռաց.

— Խաբեցի, խաբխբեցի,
Գլուխդ մի լավ քլոմոտեցի…

Վիտկան անցքից դուրս գալով շտապ հեռացավ, հետևանքներից խուսափելով։

Սոկոլը շշկլած աչքերը չռել էր։ Բայց հետևյալ վայրկյանին նետվեց դեպի ցանկապատը և փախչող Վիտկայի հետևից գոռաց.

— Լա՛վ, ժլատի մեկը, չես մարսի, դու հապա մեկ էլ խնդրիր, թե «գերմաներենդ տուր արտագրեմ»։

— Շա՛տ հարկավորս է,— հեռվից եկավ Վիտկայի պատասխանը։

Սոկոլի թիկունքում հնչեց փոքրիկների չարախինդ քրքջոցը։ Սոկոլը վիրավորված ետ նայեց։

Երեխաները սակվեցին ու ետ-ետ գնացին։ Մեկ էլ հանկարծ նրանք շուռ եկան ու փախան՝ ետևներից քարշ տալով իրենց սահնակները։ Սոկոլը քմծիծաղ տվեց։ Բակում նրան հետաքրքրող այլևս ոչինչ չկար։ Նա կոշիկի քթով հարվածեց առջևի սառցակտորին և թևաթափ շարժվեց դեպի տուն։

Երեկոյան ընթրիքի ժամանակ նա հորն ասաց.

— Ինձ համար դահուկներ առ, հայրի՛կ… քանի անգամ խոստացել ես, դե առ։

— Հիմա փող չկա,— պատասխանեց հայրը և ավելացրեց,— աշխատավարձ որ ստանամ՝ կառնեմ։

— Դահուկներ է ուզում, սրա՛ն տեսեք,— փնթփնթաց Տոլյան, իսկ մայրն ասաց.

— Ջուր էլ ուզում է, մեկ էլ գցելու է մի կողմ, մնան։

— Ո՛չ, չեմ գցի,— ասաց Յուրկան։

— Էս է շուտով աշխատավարձ կտան…

Եվ Սոկոլը համբերությամբ սպասում էր աշխատավարձին ու դահուկներին։ Դպրոցում Վիտյան ամեն օր հարցնում էր նրան.

— Հը՞, դահուկներ առա՞ք։

— Էս է շուտով աշխատավարձ կտան…— ծանրակշիռ, ինչպես հայրը, պատասխանում էր Սոկոլը։

Վերջապես այդ օրը եկավ։ Տանն սպասում էին հորը։ Լույսն արդեն վառել էին, մայրն իջեցրել էր պատուհանների վարագույրները և թեյի սեղանն էր պատրաստում։ Տոլյան մեծամտորեն նայում էր եղբորն ու ծաղրում.

— Դահուկների հույս չունենաս…

Սոկոլը չէր պատասխանում։ Նա լարված սպասում էր, մեկ նետվում դեպի պատուհանը, վարագույրը բարձրացնում, մթության մեջ ճիգ անում ինչ-որ բան նշմարել, մեկ մոտենում էր դռանը և ականջ դնում սանդուղքներից եկող շշուկներին։

Վերջապես մայրը չհամբերեց.

— Ինչ ես հոլի պես պտտվելով ոտի տակ ընկնում, քեզ ասում եմ տեղդ նստիր,— սրտնեղած ասաց նա։

Յուրան նստեց դռան մոտ դրված աթոռին. ամեն րոպե տեղից վեր թռչելու պատրաստ.

— Զը՛նգ, զը՛նգ, զը՛նգ, ղողանջեց բնակարանով մեկ։

Յուրան նետվեց նախասենյակ և ուրախ ու անհամբեր շտապ-շտապ բաց արեց դուռը։

Մուտքի մոտ ոչ ոք չկար։ Միայն ցածում սանդուղքները դոփելով ինչ-որ տղաներ փախան, ու դղրդոցով փակվեց շքամուտքի դուռը։

Ինքը, Յուրան էլ քիչ չէր այդպիսի բան անում և հետո ծիծաղում, լսելով բարկացած տանտիրուհիների գոչգոռոցը։

Իսկ այժմ նա քիչ մնաց վիրավորանքից լաց լինի և գազազած շրխկացրեց դուռը։

Վերջապես հայրը եկավ։ Նա լավ տրամադրություն ուներ, և նախասենյակում վերարկուն հանելով, ուրախ աչքով արեց Յուրկային։ Յուրկայի սիրտը թունդ առավ, նա պատկերացրեց, թե ինչպես հայրը հիմա մի դաստա փող կհանի ու կասի.

— Այս էլ դահուկների համար,— և վաղը նրանք կգնան «Դինամոյի» խանութը ու կընտրեն ամենալավ, ամենագեղեցիկ դահուկները, բամբուկե ձողերով, ոչ թե փայտե, ինչպես Վիտկայինն են։ Իսկ հետո դրանցով դուրս կգա բակ և անփութորեն կասի Վիտկային.

— Ինչպես տեսնում ես, առանք, ուզում եմ փորձել։



Իսկ հետո... հետո նա ամբողջ օրը կճչի։

Նա ուզում էր անմիջապես հորը հարցնել դահուկների մասին, բայց նա արդեն փորձ ուներ և գիտեր, որ այդպիսի դեպքում մեծերը սովորաբար պատասխանում են.

— Հայրդ դեռ չի հասցրել վերարկուն հանել, շունչ քաշել, դու քո դահուկներով մեջտեղ ես ընկնում։

Եվ Յուրան աշխատեց սպասել այնքան, մինչև որ հայրն ինքը այդ մասին խոսակցություն սկսի։ Բայց նա կարծես մոռացել էր իր խոստումը։ Ուրախ-ուրախ պատմում էր մի ինչ-որ խելառ մարդու մասին և Տոլյան ու մայրը ծիծաղում էին։ Հետո սկսեց խոսել հաշվապահ Շչերբակովի հասցեին, այնուհետև մեջտեղ բերեց ինչ-որ պողպատաձողեր, և Յուրկայի համբերությունը հատավ։ Նա հոր թևը քաշելով մեջ ընկավ.

— Հայրիկ, բա դահուկնե՞րը...

Բոլորը նայեցին հայրիկին։ Նա առանց շտապելու թեյը կում արեց, մատով թխկացրեց սեղանին և Յուրկային նայելով, ասաց.

— Դահուկները գլուխս չեն գա։ Տոլյան կոշիկներ չունի։

— Կ... կոշիկնե՞ր,— շշկլած հարցրեց Յուրկան,— ո՞նց թե, բա դու չխոստացա՞ր։

— Շատ էլ որ,— բարկացած ընդհատեց նրան մայրը,— քո դահուկներն էին մնացել հենց, էլ ուրիշ դարդ ու ցավ չունենք։

— Դուք էլ, ձեր կոշիկներն էլ...— գոռաց Սոկոլը արցունքները հազիվ զսպելով։ Նա դուրս թռավ սենյակից, կախարանից պոկեց վերարկուն ու գլխարկը և վազեց դեպի սանդուղքները։

— Կոշիկնե՜ր...— դառնությամբ շշնջաց նա, դղրդացող սանդուղքներով սլանալով ցած,— կոշիկնե՜ր...

Վերևում դուռը բացվեց և, մոր բարկացած ձայնը կանչեց.

— Յուրա, ե՛տ դարձիր...

Բայց Սոկոլը նետվեց փողոց։ Դրսում ցուրտ էր ու քամի։ Օդը լցված էր ցուրտ մառախուղով։ Յուրկան կծկվեց, ձեռքերը գրպանները խոթեց և գնաց՝ ուր աչքը կկտրեր։

Տուն վերադարձավ ուշ, ոչ ոքի չնայելով գնաց դեպի իր մահճակալը, լուռ հանվեց ու պառկեց։

Իսկ գիշերը երազում նա դահուկներ տեսավ։ Դահուկները լողալով գնում-հեռանում էին հեռու-հեռու, Յուրկան վազ էր տալիս նրանց հետևից, աշխատում էր բռնել, բայց դահուկները հանկարծ չքանում էին, ու նրանց փոխարեն հայտնվում էր մի մեծ, սև կոշիկ և Վիտկայի ձայնով հարցնում էր։

— Հը՞, դահուկներ առա՞ն...
Թաքցրի՞ն, խաբխբեցին,
Հիմար գլուխդ բլմտտեցին։

Յուրկան ուզեց խփել նրան, կոշիկը քրքջաց ու չքացավ։ Հետո նորից հայտնվեցին դահուկները ու մեկ նշմարվում, մեկ չքանում էին դեղնավուն մշուշում։

Եկավ փետրվարը, բքի ու վերջին սառնամանիքների ամիսը։

Վիտկան հաճախ էր դահուկներն առած բակ իջնում։ Սոկոլը նրան տեսնելուն պես մռայլ շուռ էր գալիս և գնում էր տուն։ Տանն արդեն նա էլ

*խօսքն չէր բացում դահուկների մասին։ Նրանք Սոկոլին թվում էին անհասանելի երազ, և նա հույս չուներ, թե երբևէ կստանա։*

*... Այդ ցուրտ, մռայլ երեկոյան երեխաները դպրոցի մոտերքը երկար չմնացին։ Գլխարկների ականջակալները ցած իջեցնելով, նրանք շտապում էին տուն, երեսները դարձնելով կտրատող քամուց։ Սառնամանիքը գնալով սաստկանում էր։ Անցորդները քարշրացնում էին օձիքները, ավտոբուսների կանգառներում սպասող մարդիկ ոտքերն իրար էին խփում, պարում էին կանգնած տեղերում, փչում էին մատներին և թաթմաններով տրորում կապտած քթերը։*

*— Վաղը համա թե դահուկ կքշե՞ս,— ծաղրեց Սոկոլը, երբ Վիտկայի հետ դպրոցից դուրս եկավ,— տեսնո՞ւմ ես ինչ է կատարվում։*

*— Կտեսնես, որ կքշեմ,— բարկացած վրա պրծավ Վիտկան, թեև ինքն էլ շատ լավ տեսնում էր, որ դահուկ քշել չէր լինի։*

*— Հի՜-հի՜,— ծաղրում էր Սոկոլը,— կքշե՞ս, ոնց չէ, վաղը կտեսնենք։*

*— Տե՛ս, խանգարողն ո՞վ է,— գռմռաց Վիտկան, քամուց կծկվելով և գլուխը ուսերի մեջ քաշելով։*

*— Տեսն՜ք, տեսն՜ք, դահուկներ ունեմ, ոչ որի չեմ տա, ամեն օր կքշեմ,— շարունակում էր չարախնդալ Սոկոլը,— շատ լավ է, հենց այդպես էլ պետք էր քեզ. հիմա ամբողջ շաբաթը այսպիսի եղանակ կլինի, գուցե և ամբողջ ամիսը։ Փետրվարն է, գիտես, թե նա ինչպիսին է լինում։*

*Վիտկան բարկացած ինչ-որ բան բրթմնջաց իբրև պատասխան, որպեսզի լուռ մնացած չլինի, բայց մի գլուխ հառաչում էր։*

*Սոկոլը ծաղրում էր, ծիծաղում նրա վրա՝ մինչև տուն հասնելը։ Ինքն իրենից շատ գոհ, նա մի շնչում սլացավ սանդուղքներով վերև և զանգի կոճակը սեղմելով, ուրախ մտածեց, որ Վիտկան հիմա էլ նրա առջև չի պարծենա իր դահուկներով։*

*Դուռը բաց արեց մայրը և խորամանկորեն ժպտալով, ներս թողեց որդուն նախասենյակ։*

*Յուրկան պայուսակը նետեց մի կողմ, և այն է՝ ճենյակ էր վազելու, որ մեկ էլ քարացավ տեղում։ Անկյունում դրված էին մի զույգ նոր դահուկներ, ամենալավ, ամենագեղեցիկ դահուկներ, իսկական բամբուկե ձողերով, ոչ թե փայտե, ինչպես Վիտկայինն էին։*

*Յուրկան բերանը բաց արեց, որ ուրախությունից աղաղակի, բայց ծայր առած աղաղակը կեսից փոխվեց հոգոցի պես բանի։*

*Դրսում մոլեգնորեն ոռնում էր քամին. ո՞ւմ համար պարզ չէր, որ վաղը ոչ մի դեպքում չէր կարելի դահուկներով զբոսանքի գնալ։ Իսկ այդպիսի եղանակը կարող էր տևել մի շաբաթ, գուցե և մի ամբողջ ամիս։ Փետրվարն էր, այդպիսին էր նա։*



# ԳԱԼԻՍ Է ՁՅՈՒՆԸ

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ

Դրսում ցուրտ է, բուք,
Գալիս է ձյունը,
Ծածկում է սևուկ
Բողարի բույնը:

Ժամփան է փակում,
Ծածկում պարտեզը,
Էլ չի երևում,
Մեր խոտի դեզը:

Ինձ համար, Նինել,
Քեռի Սահակը,
Թիակ է շինել,
Որ մաքրեմ բակը:

Մաքրեմ կտուրը:
Մաքրեմ փողոցը,
Որ գտնեմ պապի,
Կորած աղոցը:

Որ փայտ աղոցենք,
Ջարդենք դռանը,
Եվ շտապ վառենք
Մեր վառարանը:

## ԼՌՈՒԹՅՈՒՆ

*Ձյունը փռում է անծայր սավանը,*
*Ծածկում դաշտերը լայնատարած,*
*Հեռվում ննջում է փոքրիկ ավանը՝*
*Իր ծով լույսերը վաղուց մարած:*

*Դաշտում իշխում է ծանր անդորրը,*
*Սարերը լուռ են ինչպես արձան,*
*Չեն երգում ուրախ կաքավն ու լորը,*
*Ոչ էլ ջրերը կարկաչաձայն:*

*Եվ ձյան շերտի տակ քնած է հողը,*
*Արձակ դաշտերն են նիրհում լռին,*
*Չի ասում ծղրիդն իր մեղմ օրորը,*
*Հողի մեջ քնած ծաղիկներին:*

*Իջնում է ձյունը՝ լռության տերը,*
*Անխոս մնացած են ժայռ ու քարափ,*
*Բայց կյանքի երգն են երգում դաշտերը*
*Իրենց նիրհող ու խոր լռությամբ:*






Ա. ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Վաչեն արմունկով փակեց դասարանի դուռը, անցավ երկար միջանցքով, բազրիքի վրայով սահելով իջավ աստիճաններից ու նիհար պայուսակը գոտուց կախ՝ մոտեցավ դարբասին։

— Էդ ո՞ւր, Վաչիկ,— հետաքրքրվեց դպրոցի ծեր դռնապանը, որ ավլում էր բակի աշնան տերևները,— հիվանդ հո չե՞ս։

— Չէ, քեռի, ընկեր Գասպարյանն հրավիրեց դուրս գնալ ու հիանալ բնությամբ։ Դե, ես էլ կարո՞ղ էի հակառակել ուսուցչին։

— Է՜, Վաչի՛կ, Վաչի՛կ,— կորացած մեջքը ուղղելով սկսեց քեռի Թորոսը,— մեր ժամանակ, այսինքն հազար ու ութհարյուր ու իննսուն...

Բայց Վաչեն արդեն դուրս էր եկել դարբասից ու քայլում էր սալահատակ-մայթով։ Տաք, արևոտ օր էր։ Աշնան բազմերանգ գույներով ներկված ծառերի տերևները թափվել էին մայթերին ու հաճելի խշխշում էին անցորդների ոտքերի տակ։ Ահա մի տերև էլ պոկվեց ճյուղից ու օրորվելով չափեց ծառի բարձրությունը։

Քայլում էր փողոցով Վաչեն ու մտածում։ Մտածելու շատ բան կար։ Սովորականի պես չէր պատրաստել դասերը, չէր կատարել հանրահաշվի տնային աշխատանքը ու սպասում էր, թե ուր որ է, ընկեր Գասպարյանը գրատախտակի մոտ կկանչի... երբ մի միտք հղացավ։ Ավելի լավ չի՞ լինի, որ խանգարի դասը։ Ուսուցիչը ստիպված իրեն դուրս կհրավիրի դասարանից և ...ինքը «2»-ից կփրկվի...

Այդպես էլ եղավ։

«Մի ցավից պրծա, մյուսի մեջ ընկա,— մտածում էր Վաչեն,— ծնող կանչի՝ հեշտ է, է՛լի...մաման լաց կլինի, կխոսի իր անբախտության մասին, իսկ պապան կքարկանա ու, մի շաբաթ՝ մնաս բարով, կինո՝ «Նաիրի»։

Նա որոշեց առայժմ ոչինչ չասել տանը։ Ո՞վ գիտե, գուցե ընկեր Գասպարյանը մոռացած լինի։ Հետո վարանեց, չէ՝ մեկ էլ տեսար, ուսուցիչը եկավ իրենց տուն ու...

Նա անցավ «Նաիրի» կինոթատրոնի մոտով, նայեց աֆիշային։

«Հետախույզի սխրագործությունը»։ Կարելի էր նորից նայել, բայց... Վաչեն հենց այնպես քրքրեց գրպանները։ Գրքերը շուռ ու մուռ տվեց և հուսահատ շարունակեց ճանապարհը։

— Արա, Վաչի՞կ, պրիվե՛տ,— հենց այդ րոպեին լսվեց մի ձայն, ու Վաչեն նկատեց Ալբերտին, որ իրեն էր մոտենում։

Նա չալպաուրիկ մի բլուզ էր հագել, որի ներքևի ծայրերը կախված էին ձագարաձև փողքեր ունեցող շալվարի վրա։ Գլխին անկանոն դասավորված խոտի դեզի նման աճել էին մազերը։ Կոշիկների քթերը վերև էին ցցված։ Ուրիշ անգամ Վաչեն չլսելուն կտար ու կանցներ Ալբերտի մոտով։ Բայց այսօր նա մի տեսակ չէր ուզում մենակ մնալ, ուզում էր խոսել մեկի հետ, սիրտը բացել...

— Ո՞նց ես, տո,— շարունակում էր Ալբերտը,— հիշո՞ւմ ես, որ լագերում իրար հետ խնձորի գողության էինք գնում, հիշո՞ւմ ես...

Վաչեն ուզում էր ասել, որ շատ լավ է հիշում, թե ինչ նրան հեռացրին ճամբարից, բայց սիրտ չարեց։ Մեկ էլ տեսար նեղացավ։ Հետո նրանք խոսեցին դեսից-դենից ու Վաչեն պատմեց գլխով անցածը...

— Պա՛հ, ես էլ ասում եմ ինչի՞ ես քիթդ կախել,— Ալբերտը քահ-քահ ծիծաղեց։— Դու էլ թող, մենք որ դպրոց չենք գնում, պակաս տղա ե՞նք։

— Այսինքն էդ ո՞վ եք դուք...

— Ես ու իմ ընկերները։

Վաչեն նայեց Ալբերտի ցույց տված կողմը։ Կինոթատրոնի շենքի պատի տակ մի քանի տղաներ էին կանգնած՝ ծխախոտները բերաններին ու, որքան հնարավոր է, խայտաբղետ հագնված։ Երկուսը Վաչեի տարիքը կունենային, երրորդը մեծ էր, բարձրահասակ ու նիհար։ Նրա ճակատին սպի կար, իսկ աչքերը Վաչեին էին նայում ուշադիր հետաքրքրությամբ։ Այդպես գազանանոցում նոր բերված կենդանիներին են նայում։ Վաչեն վատ զգաց իրեն։ Նա ուզեց թողնել, հեռանալ ու դրա համար ձեռքը Ալբերտին երկարեց։

— Ո՞ւր, տո՛,— զարմացավ Ալբերտը։— Բա ես կթողնե՞մ, որ դու դիլխոր թողնես, գնաս։ Մտնենք կինո, հը՞... պատիվ եմ անում...

Վաչեն ուզեց հրաժարվել, բայց նորից սիրտ չարեց։ Հետո իրեն արդարացնելու համար մտածեց, թե ի՞նչ կա, մեկ է, ծնողները ուշ են աշխատանքից գալիս։ Իսկի չեն էլ իմանա։

Նրանք մոտեցան շենքին։ Ալբերտն իր ընկերներին ինչ-որ բան ասաց։ Նրանք ավելի ուշադիր ու ասես հեգնանքով նայեցին Վաչեին, իսկ բարձրահասակն ասաց.

— Լավ տղա է երևում, կարելի է...

Վաչեին շատ զարմացրեց Ալբերտի առատաձեռնությունը։ Նա տոմսավաճառից չվերցրեց դրամի մանրը, իսկ երբ Վաչեն ակնարկեց այդ մասին, քմծիծաղ տվեց.

— Պատվից խոսա՛։



* * *

Երբ կինոն վերջացավ, ու նրանք փողոց դուրս եկան, արդեն երեկոյանում էր։ Աղմուկով ու զնգոցով անցնում էին տրամվայներն ու ավտոբուսները։ Քամին աշնան վերջին տերևներն էր պոկում, տանում—խփում մարդկանց դեմքերին ու հետո ասես ուժասպառ հանդարտվում, որպեսզի մի վայրկյան անց նորից սուրա։

— Ես գնամ, արդեն ուշ է,— ասաց Վաչեն։

— Սա՞ է ուշը,— Ալբերտը հեգնանքով ծուլեց,— հրա կյանքը նոր է սկսվում։

— Ախր քաղցած եմ։

— Դե շուտ ասա է՛լի, ես էլ եմ սովից մեռնում,— գնանք իրար հետ ուտենք։ Գնանք, ժող,— դիմեց Ալբերտը բարձրահասակին։

— Ո՞ւր ենք գնալու,— հարցրեց Վաչեն։

— Հե՛չ, բանեղ՝ մի տեղ կա։

Վաչեն նորից փորձեց առարկել, ասաց, որ ուշ է, որ ծնողները կսպասեն, բայց նորից տեղի տվեց։ Նրանք կտրեցին հրապարակը ու օպերետայի շենքի կողքի նեղ փողոցով շարունակեցին ճանապարհը։ Կանգ առան երկհարկանի մի տան մոտ։ Ներքնահարկից օղու և գարեջրի հոտ էր գալիս։ Վաչեն կնճռոտեց քիթը ու հետ ընկրկեց։

— Մի վախի, քեզ չեն ուտի,— ծիծաղեց Ալբերտը,— իջիր ներքև։

Նախաճաշարանում օդը ծանր էր։ Ինչ-որ մեկը երգում էր կոկորդի ամբողջ ուժով։ Սեղանին թափված էին լավաշի կտորտանքներ ու ոսկորներ։ Երբ տեղավորվեցին բարև մի սեղանի շուրջը, բարձրահասակը գոռաց.

— Մի-մի քյաբաբ բերեք, մի շիշ էլ օղի...

Ալբերտը լցրեց բաժակները։ Վաչեն իր բաժակը հետ հրեց ու ասաց, որ ինքը օղի չի սիրում։ Ալբերտի հասակակից մյուս տղան հանկարծ հռհռաց.

— Վախենո՛ւմ է...

— Ո՞վ է վախենում,— բարկացավ Վաչեն։ Նրա գլուխը ծանր օդից պտտվում էր։

— Հենց դու,— շարունակեց հռհռալ Սերոբը։

— Ե՞ս,— Վաչեն մոռացավ ամեն ինչ. Նա ուզում էր անպայման հենց հիմա ապացուցել, որ ինքը վախկոտ չէ, որ եթե բռնցքամարտի ձեռնոցներ լինեին այստեղ, ցույց կտար այդ երկարամազին,— Ե՞ս,— կրկնեց նա և մի ումպով դատարկեց բաժակը։

Օղին հալված կապարի նման այրեց Վաչեի կոկորդը։ Հազը խեղդեց նրան։ Աչքերը լցվեցին արցունքով, և խորտկարանը լողաց մշուշի մեջ։

Քիչ անց նա արդեն գրկել էր Ալբերտին ու ծիծաղում էր հարբածի ներվային թույլ-թույլ ծիծաղով։

— Հասկանո՞ւմ ես, ես ոչ ոքից չեմ վախենում... ընկեր Գասպարյանը...

— Տո դու դրա մասին մի մտածի։ Մեր նման ընկերներ ունես... Էգուց ժողը կգնա ձեր Գասպարյանի մոտ, ամեն ինչ կդզի։ Մենակ թե դու տանը բան չասես, հա՛... ասա ընկերոջս ծնունդն էր...

* * *

Ժորան, իսկապես, եղավ դպրոցում։ Նա հավատացրեց ուսուցչին, որ Վաչեի հայրը գործուղման մեջ է, իսկ մայրը՝ հիվանդ։ Եվ որ ինքը Վաչեի «քեռու տղան» է։ Նա նույնիսկ ընկեր Գասպարյանի ներկայությամբ նախատեց Վաչեին, որը երեկվա դեպքերից հետո գունատ ու շփոթված տեսք ուներ և խոստացավ, որ այլևս նման դեպք չի կրկնվի...

Դպրոցի անկյունում նա Վաչեին ասաց.

— Իսկ դու լաց էիր լինում։ Տեսա՞ր, ինչ հեշտ պրծար։

Վաչեն չգիտեր ինչ ասեր։ Ժորան այլևս այն չէր կարծես, որ կանգնել էր ընկեր Գասպարյանի առջև խոնարհ ու լուրջ։ Հիմա սև հոնքերի տակից Վաչեին էին նայում երկու խորամանկ, լկտի աչքեր, ստելու և անմեղ ձևանալու ընդունակ աչքեր։ Ու Վաչեն սարսուռ զգաց։

— Էսօր էլի կգաս էնտեղ,—բաժանվելուց առաջ ասաց Ժորան։

Նա արդեն հրամայում էր։ Վաչեն լավ զգաց այդ։ Մի ինչ-որ ներքին թաքնված ձայն նրան ասում էր, որ պետք չի գնալ, պետք չի կապվել այդ տղաների հետ, բայց այդ ձայնը թույլ էր։ Իսկ մի ուրիշ ձայն համառորեն հրում էր նրան, ստիպում, թե ինչո՞ւ չգնա, ի՞նչ պակաս տղաներ են, էլի նեղ ժամանակ նրանք օգնության հասան, թե չէ մայրիկը, հայրիկը որ իմանայի՜ն...տեսա՞ր, նրանք Վաչեին կինո տարան... շատ փող ունեն...

— Իսկ որտեղի՞ց է նրանց այդքան փողը,— խուլ բողոքում էր առաջին ձայնը։

— Ինչպե՞ս թե որտեղից, բա Ալբերտը չասա՞ց, թե իր հայրը բարձր պաշտոնյա է... —բարկանում էր երկրորդը։

Ու Վաչեն գնաց...

Հետո նրանք ավելի ու ավելի հաճախ էին հանդիպում։ Միասին շրջում էին փողոցներում, գնում կինո, մտնում նախաճաշարան։ Վաչեի համար հետզհետե դրանք սովորական բաներ դարձան։ Նա նույնիսկ չզարմացավ, երբ Ալբերտը մի անգամ փողոցում վիրավորեց մի աղջկա, այլ նույնիսկ ծիծաղեց։ Բայց որովհետև ցերեկները նա շարունակում էր դպրոց հաճախել, այդպես էլ չէր իմանում, թե ինչով էին զբաղվում իր նոր ընկերները։ Մի անգամ, երբ հարցրեց այդ մասին՝ Ժորան կես լուրջ, կես կատակ ասաց. «Աշխատում ենք»։ Մի բան էր միայն դեռ մտատանջում Վաչեին։ Նա տեսնում էր, որ օրեր շարունակ, երբ տղաները փող չեն ունենում, վիճում են իրար հետ, կռվում։ Օր է լինում, որ աջ ու ձախ փող են շռայլում։ Ու միշտ նման դեպքերում Վաչեի հոգու մեջ մի ձայն բողոքում էր՝ «Դե ասա, որտեղի՞ց է նրանց մոտ այդ փողը»։

Եվ մի օր Վաչեն իմացավ այդ մասին։ Իմացավ այն ժամանակ, երբ տղաները ստիպեցին դրամ «վաստակել» իրենց ճանապարհով։ Այո, ստիպեցին։ Ժորան չար-չար նայելով սև հոնքերի տակից, ասաց.

— Հերիք է ինչքան մեր հաշվին ապրեցիր։ Հիմա դու էլ փող ճարիր։

— Որտեղի՞ց,—կարկամեց Վաչեն։

— Կլինես մեզ հետ, կիմանաս։

* * *

... Ձյուն էր գալիս։ Տրամվայը զնգոցով անցնում էր Միկոյանի անվան պողոտայով։ Երկրորդ վագոնի ետևի հարթակում կանգնել էին Ժորան ու Վաչեն։ Ալբերտը երկու ձեռքով բռնել էր դռան բռնակները ու դեպի դուրս էր նայում։ Շուկայի մոտ գտնվող կանգառում մի քանի հոգի վագոն բարձրացան։ Ժորայի ազդանշանով Ալբերտը փակեց նրանցից մեկի՝ մի ալեհեր մարդու ճանապարհը և սկսեց հրել նրան՝ իբր ինքն ուզում է ներքև իջնել։ Նրան հաջողվեց արձակել ծերունու վերարկուի կոճակները. մոտ գալով, Ժորան ևս կանգնեց ծերունու դիմաց ու հրելով սկսեց զգուշությամբ խուզարկել նրա գրպանները։ Փոքր անց Վաչեն, որը չէր կարողանում տեսնել ուղևորի դեմքը, զգաց, թե ինչպես գրպանը ծանրացավ։ Նա ձեռքը աննկատելիորեն գրպանը խոթեց ու շոշափեց կաշվե դրամապանակը։ Ո՞վ պետք է կասկածեր փոքրահասակ, հեռու կանգնած Վաչեի վրա։ Բայց հենց նույն վայրկյանին.



— Դրամապանա՞կս,— հուզված բացագանչեց ծերունին ու բռնեց Ժորայի թևից։ Աղմուկի վրա մարդիկ հավաքվեցին։

— Փախիր,— արմունկով Վաչեին հրելով հասկացրեց Ժորան։

Բայց Վաչեն սարդնած քարացել էր տեղում. կողոպտված ծերունին իրենց հանրահաշվի ուսուցիչն էր՝ ընկեր Գասպարյանը…

— Ես տեսա՛ սրանք էլ էին,— բացագանչեց քաղաքացիներից մեկը, մատնացույց անելով Ալբերտին ու Վաչեին։

Դեպքի վայրը հասած միլիցիոներները ձերբակալեց նրանց։ Դրամապանակը դուրս եկավ Վաչեի գրպանից։

— Ա՛յ, տեսնո՞ւմ եք, ես չեմ, էդ տղան է գողացել,— միլիցիոներներին և ուղեկցող մարդկանց համոզում էր Ժորան։ Նա գունատ էր, խեղճացած, ասես փոքրացել էր։ Նախկին վստահ շարժումների հետքն անգամ չկար։

Ծերունի ուսուցիչը նոր միայն նայեց Վաչեին, նայեց ու ճանաչեց։

—Ի՞նչ եք ասում,— նրա ձեռ քերը դողում էին,— թյուրիմացություն է։ Նա իմ աշակերտն է… խոսիր, Վաչե՛։

Վաչեն լուռ էր։ Նա ուզում էր լալ բարձրաձայն, գոռալ, նա ուզում էր, որ հիմա մեռնի ինքը։

Զյունը շարունակում էր տեղալ ծանր ու մեծ փաթիլներով, ճերմակով էր ծածկվել ամեն ինչ։ Միլիցիայի բաժանմունքը տանող ճանապարհով քայլում էին օրենքի պաշտպանն ու վշտահար ուսուցիչը, նրանց առջևից՝ Ժորան, Ալբերտը ու Վաչեն… Արցունքի խոշոր կաթիլները դանդաղորեն գլորվում էին նրա գունատ այտերի վրայով, խառնվելով հալված փաթիլների շիթերին։

Վաչեն լալիս էր…





# Քաջ Ծավիկը



Լ. ԲԱՌՆԱԿՅԱՆ

Նկ. Վ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ

Ծավիկը պսպղուն աչքերով մի աշխույժ մկնիկ էր։ Նա դեռ նոր էր սկսել բնից դուրս գալ, վազվզել։ Պապիկը, տատիկը, հայրիկն ու մայրիկը խրատում էին նրան.

Իմացիր, որ կատու կա,
Բնից հեռու մի գնա,
Բավական է քեզ տեսնի,
Կցատկի ու հափ կանի։

Երեկոյան հարևան մկները հավաքվում էին Ծավիկենց բույնը։ Ծավիկը լսում էր, թե ինչպիսի ահ ու սարսափով էին խոսում կատվի մասին։ Նա նույնիսկ զարմանում էր, որ իր պապն էլ է վախենում կատվից, չէ՞ որ նա ամենաքաջ մուկն է։

— Թը՛րխկ,— հանկարծ լսվում էր մի ձայն...

— Վա՜յ, վա՜յ, կատուն է, կատուն,— բղավում էին մկներն ու իսկույն ծակ ու ծուկ մտնում։

Ծավիկն ամենից շուտ էր փախչում. մտնում էր բնի ամենախոր անկյունն ու ծվծվում.

«Ես կատվից չեմ վախենում, ես կատվից չեմ վախենում»։

Ծավիկի մայրը լսում էր, շոյում նրա գլուխն ու ասում.

— Մեծացիր դու, իմ Ծավիկ, դարձիր քաջ ու անվախ մկնիկ։

Երբ ամեն ինչ անցնում էր, ու մկների խումբը հանգստացած նորից հավաքվում էր, Ծավիկը կանգնում էր ետևի ոտների վրա, հպարտորեն շարժում պոչն ու կրկնում.

«Ես կատվից չեմ վախենում, ես կատվից չեմ վախենում, տեսեք, որ ես չեմ փախչում»։

Մկները ծիծաղում էին փոքրիկ Ծավիկի վրա։

Մի օր էլ Ծավիկը գնաց բնից դուրս և այլևս չվերադարձավ։

Գլխին էր խփում հիվանդ տատիկը, աչքերն էր սրբում խեղճ մայրիկը՝ ա՜խ, կորել էր քաջ Ծավիկը։

Պապիկն ու հայրիկն անցնում էին անկյունից-անկյուն, ծվծվում էին. «Ծավիկ, Ծավիկ»... բայց Ծավիկը չըկար ու չկար։

Ծոր բնի մեջ կուչ էին եկել Ծավիկի հարազատներն ու ողբում էին.

Կորավ մեր տան լավիկը,
Մեր սիրելի Ծավիկը,
Ետ չի դառնա նա էլ տուն,
Նրան կերել է կատուն։

Հանկարծ ինչ-որ բան անցավ բնի





մոտից։ Բույնը մի պահ մթնեց, հողակոշտեր թափվեցին, ապա վազելով ներս ընկավ Ծավիկը։

— Գիտե՞ս, մայրիկ, ես այսօր մի կատու կերա,— քնի մեջտեղն հպարտ կանգնելով ասաց նա։

Բոլորը ցնցվեցին, գունատվեցին ու դանդաղ մոտեցան Ծավիկին, իսկ հիվանդ տատիկը քիչ մնաց ուշագնաց լիներ։

Պապն ուրախացած թռավ տեղից, թուլացած ոտքերով մոտեցավ թոռին ու ասաց.

— Ծավիկ, դու գժվե՞լ ես, ի՞նչ ես խոսում։

— Այո՛, այո՛, պապիկ ջան, ես կատու կերա, ճիշտ եմ ասում, ձեզ չեմ խաբում։

Մկների ընտանիքի անդամները սարսափից և ուրախությունից չգիտեին ինչ անեին։

Այդ պահին մրրիկի նման ներս թափվեցին բազմաթիվ մկներ։

— Զարմանալի բան, չլսված, չտեսնըված բան,— գոռում էին նրանք միաբերա՛ն։

— Ի՞նչ է, ի՞նչ է պատահել,— վախեցած նրանց մոտեցավ Ծավիկի մայրիկը։

— Մի քիչ առաջ մտանք հարևան սենյակը,— շնչակտուր սկսեց պատմել մի ծեր մուկ,— հանկարծ լսեցինք մի փոքրիկ տղայի ձայն։ Նա լալիս էր, աղաղակում, ոտքերը գետնին դոփում ու ասում.

— Մայրիկ, կատուս ո՞ւր է, կատուս չկա, կատուս եմ ուզում, կատուս։

Մայրը պատասխանեց.

— Տղաս, լաց մի լինի, երևի մուկն է կերել...

Ծավիկն իսկույն առաջ եկավ.

— Այո,. այդ մուկը ես էի, ես եմ կերել նրա կատվին. բա՛, քաջ Ծավիկին չե՞ք ճանաչում...

Բոլորը սարսափած ետ-ետ քաշվեցին։ Ծերուկ մուկը նորից մոտեցավ Ծավիկին, սև, փայլուն աչքերը լայն բացեց ու հարցրեց.

— Իսկ դու չվախեցա՞ր նրանից...

— Բոլորովին, շատ քաղցր էր,— հըպարտությամբ պատասխանեց Ծավիկը։

Հանկարծ անկյունից մի մուկ բղավեց.

— Եղբայրներ, եկեք, մեղրահացի կտոր եմ գտել։

— Դա իմն է,— ճչաց ու տեղից թըռավ Ծավիկը,— դա իմ կերած կատվի թաթն է։

— Հա՛, հա՛, հա՛,— ծիծաղեցին բոլոր մկները միասին։

— Պարծենկոտ Ծավիկ, մեղրահացն կատո՞ւ ես կերել, հա՞։

— Այո, ի՞նչ կա որ,— պոչը օրորելով գլուխը ցնեց Ծավիկը,—թեկուզ մեղրահացե կատու, կարծում եք դա հե՞շտ է, գիտե՞ք ինչքան էր նման իսկական կատվի, սիրտս ճաքեց, մինչև մոտեցա, բայց ես կերա նրան։

—Միաու, միաու, միաու,— հանկարծ հենց բնի մոտից լսվեց տանտիրոջ կատվի ձայնը։

Մկները լեղաճաք, իրար գլուխ ջարդելով ծակերը մտան, իսկ երբ կատուն հեռացավ, ու մկները նորից հավաքվեցին, Ծավիկը չկար։

Նորից սկսեցին փնտրել Ծավիկին, այս կողմ ընկան, այն կողմ ընկան, վերջը նրան վախից կիսաշունչ դառած, գտան բնի ամենախոր անկյունում ընկած։ Ոտքերից բռնած դուրս քաշեցին։

—Հը՞, քաջ Ծավիկ, ո՞ւր ես մտել, կատու էր եկել, չէ՞ր ուզում ուտել։

# ՁՄԵՌ

ՀՈԲՈՍ ԱՊԵՐ

Նկ. Գ. ԽԱՆՋՅԱՆԻ

Ձյան փաթիլներն իրար գրկած
Կատակելով իջնում են ցած։
Եվ ձմեռվա այդ խիստ ցրտին
Փայտ է տաշում փոքրիկ Պետին.
Փայտ է տաշում, ուրախ դարսում,
Թեև ցուրտ է, բայց չի մրսում։
Նա շինում է ամուր սահնակ,
Որ սլանա արագ-արագ։
Իսկ քիչ հեռու՝ մուշտակին հագած,
Լաց է լինում Սաքոն կանգնած։
Ձեռքն ու ոտքը, տես սառել են,
Ձյունից ինքը ճերմակել է։
Փոքրիկները հեռվից տեսնում,
Ձնեմարդ են նրան կարծում։



# ՔՈՒՉԻԿՆ ՈՒ ՓՈՒՉԻԿԸ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Ջեռքիս կապույտ փուչիկը
Թռավ երկինք բարձրացավ,
Բայց շատ տխրեց քուչիկը,
Հաչեց վրաս, բարկացավ։

Բռնել ուզեց, վեր թռավ,
Բայց չհասավ թաթիկը.
— Վա՜յ, բռնեցեք, հեռացավ,—
Ձայն էր տալիս Սաթիկը։

Հասավ ծայրը երկնքի,
Էլ չերևաց փուչիկը,
Աղմուկն անցավ մեր բակի,
Լռեց նաև քուչիկը։

Բայց երբ իջավ զով գիշեր,
Ու երբ լուսինը ելավ,
Մեր քուչիկը նայեց վեր,
Հաչեց նորից՝ հա՛ֆ, հա՛ֆ, հա՛ֆ...

Պարզ լուսինն էր՝ երևում,
Եվ ուրախ էր քուչիկը,
Նրան այնպես էր թվում,
Թե գտել է փուչիկը։



Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

# Ես քարտաշ եմ

Վ. ՄԽԻԹԱՐՅԱՆ Նկ. Լ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆԻ

Ես Արտաշն եմ, ես Արտաշն եմ,
Չկամ դեռ վեց տարեկան,
Բայց, իմացեք, ես քարտաշ եմ,
Քարտաշների բարեկամ։

Թե՛ կտաշեմ, թե՛ կնախշեմ,
Կհղկեմ ոնց ապակի,
Չկարծեք, թե լոկ քարտաշ եմ,
Որմնադիրն եմ մեր բակի։

Շինում եմ ես կինո, դպրոց,
Մանկամսուր, թատրոն, տուն,
Սիրուն ակումբ և հյուրանոց,
Բոլորն էլ պինդ, հաստատուն։

Ես Արտաշն եմ, ես Արտաշն եմ,
Չկամ դեռ վեց տարեկան,
Բայց, իմացեք, ես քարտաշ եմ,
Քարտաշների բարեկամ։



## ՀՆԴԿԱԿԱՆ ՓՈՔՐԻԿ ՀԵՔԻԱԹՆԵՐ

### ԱՉՔԻ ԴԵՂ

Մի մարդ գալիս է բժշկի մոտ և ասում.

— Պարոն բժիշկ, փորս ցավում է։

— Իսկ ի՞նչ ես կերել։

— Խակ միրգ, — պատասխանում է հիվանդը։

— Այդ դեպքում ես քեզ աչքի դեղ։

— Իսկ ինչո՞ւ աչքի։

— Որպեսզի լավ նայես, թե ինչ ես ուտում։

### ՇԱՐԱԴՐՈՒԹՅՈՒՆ

— Մոխան, — ասաց ուսուցիչը, — քո գրած «Մեր շունը» շարադրությունը տառացիորեն համընկնում է քո եղբոր շարադրության հետ։

— Հապա ինչպե՞ս, — պատասխանեց Մոխանը, — չէ՞ որ ես ու եղբայրս միևնույն շունն ունենք։

### «ԳԱՂՏՆԱՊԱՀԸ»

— Ռենու, դու կարո՞ղ ես գաղտնիքները պահել։

— Իհարկե, բայց ցավն այն է, որ երբ ես այդ գաղտնիքներն ուրիշին եմ պատմում, նրանք չեն կարողանում սուս մնալ։

### ԵՂՋԵՐՈՒՆ ՈՒ ԱՂՎԵՍԸ

Մի անգամ եղջերուն խիստ ծարավեց և մոտեցավ աղբյուրին։ Իսկ այդ աղբյուրը գտնվում էր մի խոր փոսի մեջ։ Եղջերուն կուշտ ջուր խմեց, բայց երբ ցանկացավ դուրս գալ փոսից՝ չկարողացավ։ Նրան մոտեցավ մի աղվես և ասաց.

— Է՜, եղբայր, նախքան փոսի մեջ թռչելդ, քեզ հարկավոր էր իմանալ՝ հնարավո՞ր է այնտեղից դուրս գալ, թե՝ ոչ։





# ԲՐԱՀՄԱՆՆ ՈՒ ԻՐ ԱՇԱԿԵՐՏԸ

Բրահմանը[1] մի աշակերտ ուներ: Աշակերտը միշտ քաղցած էր մնում, որովհետև բրահմանը նրան ամբողջ օրը միայն եգիպտացորենի մի բլիթ էր տալիս:

Մի անգամ բրահմանը տղային ասաց.

—Վաղը տոն է, և բոլոր հարուստները տոնի առթիվ կարկանդակ են թխելու: Դու շուտ գնա հարուստների, վաշխառուների, կալվածատերերի տները և ողորմություն խնդրիր, բայց, տես, առանց ինձ չհանդգնես ուտել: Երբ որ կբերես, այն ժամանակ կեսը քեզ կտամ:

Գնաց աշակերտը հարուստների տները և սկսեց ողորմություն խնդրել: Ոչ ոք նրան չէր մերժում. ամեն տեղ մեկական կարկանդակ էին տալիս: Մինչև կեսօր նա հավաքեց տասնվեց կարկանդակ և տանում էր բրահմանին: Տղան մի երկու փողոց անցավ և կարկանդակների անուշ բուրմունքից այնպիսի տանջող քաղց զգաց, որ քիչ մնաց լաց լիներ: Նա երկար դիմանում էր, վերջապես ինքնիրեն ասաց.

«Ուսուցիչս խոստացավ կարկանդակների կեսը ինձ տալ: Նշանակում է, ութ կարկանդակ ինձ է հասնում: Հենց դրանք էլ ես կուտեմ: Ի՞նչ տարբերություն՝ հիմա ուտեմ, թե՝ հետո»:

Եվ, այսպես որոշելով, նա արագ կուլ տվեց իր բաժինը ու շարունակեց ճանապարհը:

Մի քիչ քայլելուց հետո տղան նորից մտածեց.

«Ի՞նչ պիտի ասի ուսուցիչս, եթե ես նրա առջև դնեմ ութ կարկանդակ: Իր խոստման համաձայն՝ նա կեսը կտա ինձ: Իսկ նրա համար միևնույն չէ՞, ես իմ բաժինը հիմա կուտեմ, թե՝ հետո»:



Եվ նա չորս կարկանդակ էլ կերավ: Մնացած չորսը տանում էր բրահմանին: Հենց բրահմանի տան առջև պատահեց մի գյուղացու: Գյուղացին եգիպտացորենի բոքոնն այնպիսի ախորժակով էր ուտում, որ տղան նորից ուտելու ցանկություն զգաց:

«Իսկ ինչո՞ւ ես երկու կարկանդակ էլ չուտեմ,— մտածեց նա:—Չէ՞ որ այս չորս կարկանդակից, ըստ պայմանի, երկուսը ինձ է պատկանում: Միևնույն չէ՞, երբ կուտեմ ես իմ բաժինը, հիմա՞, թե՝ հետո»:

Եվ առանց երկար մտածելու, նա դարձյալ կերավ երկու կարկանդակ:

«Այժմ ինձ մոտ մնաց երկու կարկանդակ,—կըրկին սկսեց մտածել աշակերտը: Դրանցից մեկը, ըստ պայմանի, իմն է»:

Եվ նորից կերավ մի կարկանդակ:

Վերջին կարկանդակը նա տարավ բրահմանին:

— Այդ ի՞նչ է,—գոռաց բրահմանը,—ամբողջ օրը դու միայն մի կարկանդա՞կ ես ստացել...

— Ի՞նչ էք ասում, ի՞նչ եք ասում, պատվարժան հայր, ես հավաքել եմ ոչ թե մեկ, այլ՝ տասնվեց կարկանդակ:

— Հա՞, իսկ ո՞ւր են դրանք:

— Ճամփին կերա:

— Ինչպե՞ս կերար:

— Պատվարժան հայրը հարցնում է, թե ինչպես ես դրանք կերա. ա՛յ, այսպես...

Եվ մինչև բրահմանը ուշքի կգար, աշակերտը կուլ տվեց վերջին կարկանդակը:

Այդպես էլ բրահմանին չհաջողվեց տոնի առթիվ համեղ կարկանդակներ ճաշակել:

---

[1] Բրահման—կրոնական բարձր պաշտոնյա Հնդկաստանում:




ԿԱՐԵՆ ՍԻՄՈՆՅԱՆ

Նկ. Գր. ԱՂԱՍՅԱՆԻ

*Ես ավտոմեքենայի ղեկը թեքեցի դեպի Աստղագետների քաղաքը տանող ասֆալտապատ խճուղին։*

*Շատ էի շտապում։*

*Մի քանի րոպե առաջ զանգահարեց ընկերս՝ աստրոֆիզիկ Ռաֆայել Գանքանյանը և խնդրեց, որ առանց ժամանակ կորցնելու անցնեմ իր մոտ։ Ես միշտ էլ հաճույքով էի նրան այցելում, որովհետև նման այցելությունների ժամանակ նա առաջարկում էր բավականին հետաքրքիր ու զվարճալի թեմաներ՝ ֆանտաստիկական պատմվածքների համար։*

*Ռաֆայելը ապրում էր Աստղագետների քաղաքում։*

*Երբ սրանից երեք տարի առաջ կառուցվեց տեխնիկայի վերջին խոսքով նախագծված, աշխարհում եզակի «Գալակտիկա» աստղադիտարանը, նրա շուրջը սնկերի պես բուսնեցին բազմաթիվ գիտահետազոտական ինստիտուտներ, բնակելի շենքեր, պուրակներ ու զբոսայգիներ։ «Գալակտիկա» աստղադիտարանը դարձավ Աստղագետների քաղաքի կենտրոնը։ Նրանից աստղի ճառագայթների պես ձգվեցին կանաչազարդ փողոցները, որոնցից մեկի վրա էլ ապրում էր Ռաֆայել Գանքանյանը։*

*...Ես մեքենան կանգնեցրի բակում և ուղղվեցի դեպի շքամուտքը։ Իմ ուշադրությունը գրավեց առանձնատան աջ թևամասում գտնվող հրթիռը։ Դա, ավելի շուտ մոդել էր, մոտ հինգ մետր երկարությամբ ու սիգարաձև իրանով։ Հրթիռը հպված էր առանձնատան պատին։ Նրա փոքրիկ անիվները նստած էին երեք զույգ ռելսերի վրա, որոնք գետնի հետ կազմում էին 45 աստիճանի անկյուն։ Ճիշտն ասած, ես այդ մոդելի մեջ ոչ մի հետաքրքիր բան չգտա։ Նման տիեզերական նավեր կոսմոնավտիկայի ցուցահանդեսում շատ էի տեսել։*

*Արագ քայլերով վեր ելա։ Ռաֆայելին գտա իր առանձնասենյակում։ Նա թաղված էր ինչ-որ հաշվումների մեջ։ Ես, ինչպես միշտ, որոշեցի նրան չխանգարել և նստելով անկյունում դրված սեղանի առաջ, սկսեցի աչքի անցկացնել օրվա թերթերը։ Իմ ուշադրությունը գրավեց աստղադիտարանի օրգան «Տիեզերք» թերթի առաջին էջում զետեղված մի հայտարարություն։*

*Խոշոր շրիֆտով շարված բառերը հայտնում էին, որ սույն թվականի հուլիսի 13-ին, Մոսկվայի ժամանակով ժամը 8-ն անց 15 րոպեին Աստղագետների քաղաքից կատարվելու է առաջին թռիչքը դեպի Լուսին։*

*Այդ թռիչքին մարդկությունը շատ վաղուց էր սպասում։ Նրա մասին գրել են ֆանտաստիկական վեպերի հեղինակները, նկարահանվել էին կինոֆիլմեր... Չնայած դրան, շատ անսպասելի էր թվում այդ թռիչքը, որը պետք է կատարվեր վաղը։*

*Ես էլ էի որոշել այդ մասին մի ֆանտաստիկական վիպակ գրել։ Մտադիր էի գրել հնարավորին չափ հետաքրքիր, ընթերցողներին պատմել լուսնային գիտա-հետազոտական լաբորատորիաների, այնտեղ հայտնաբերված արժեքավոր հանքերի մասին։ Առանձին մաս պետք է նվիրեի սովետական խիզախ ճանապարհորդների արկածներին Լուսնի անտեսանելի կեսի վրա, ուր թագավորում է հավերժական սառնամանիքը, ուր հնարավոր չէ ջերմությունը չափել սնդիկի ջերմաչափերով, որովհետև սնդիկը նման ճքճքան ցրտին պինդ վիճակի է անցնում։*

*Բայց խնդրեմ... պարզվում է, որ վաղը պետք է կատարվի առաջին թռիչքը դեպի Լուսին։ Ես փաստորեն ուշացել եմ։*

*Որքան դառն է այդ ճշմարտությունը գրողի համար, գրողի, որն ուշացել է կյանքից։*

*...Ուսիս վրա զգալով ծանոթ ձեռքի ծանրությունը, ես սթափվեցի մռայլ մտքերից։ Ռաֆայելը ձեռքը ուսիս դրած, մեղմ ժպտում էր։*

*— Ի՞նչ կա զարմանալու,— ասաց նա։— Թռիչքը կկատարվի վաղը։ Ուզո՞ւմ ես, դու էլ մասնակցիր։*

*Ես նրան ասացի, թե ինչն է ինձ մտատանջության մեջ գցել։ Նա միայն ծիծաղեց։*

*— Ավելի լավ։ Դու մասնակցիր մեր ճանապարհորդությանը և քո աշխատանքը ոչ միայն զուր չի կորչի, այլև կլինի օգտակար։ Կարող ես գրել ճանապարհորդության օրագիրը, որը հաճույքով կկարդան ընթերցողները։*



— Բայց չէ որ հարկավոր է պատրաստվել... Չեմ հասցնի։

— Վաղը ուղիղ ժամը 8-ին եկիր ինձ մոտ։ Վերցրու միայն բլոկ-նոտն ու մատիտը, նշումներ կկատարես։

— Բայց այդպես հանկարծակի...— փորձեցի առարկել ես։

— Ի՞նչ է, վախենո՞ւմ ես։ Իզուր։ Ես քեզ ինչպե՞ս հավատացնեմ, որ թռիչքը...

— Իսկ քանի՞ օր կտևի,— ընդհատեցի ես։

— Երկու օր, ավելի ճիշտ՝ 51 ժամ։ Այժմ գնա ինձ մոտ և ճանապարհորդությունից առաջ մի լավ հանգստացիր։ Առավոտյան կսպասեմ այստեղ։

Ինչպես որոշել էինք, առավոտյան, ճիշտ ժամը 8-ին ես Ռաֆայելի առանձնասենյակում էի։ Քանքանյանը նայեց ժամացույցին և գոհունակությամբ ժպտաց։

— Տասնհինգ րոպե հետո ստարտը կտրվի,— ասաց նա։— Գնանք...

Նա ինձ տարավ առանձնատան աջ թևամասում գտնվող փոքրիկ խուցը։

— Մտիր,— առաջարկեց նա, բացելով դուռը։

Ես հայտնվեցի մի սիգարաձև սենյակում։

— Մենք գտնվում ենք հրթիռի մեջ,— ասաց Ռաֆայելը,— երևի դրսից տեսած կլինես։

— Մի՞թե հրթիռը իսկական է,— ապշեցի ես,— իսկ ինձ թվում էր, թե դա միայն մոդել է։

Ռաֆայելը պատասխանի փոխարեն խորամանկորեն ժպտաց։

...Հրթիռի ներսը կահավորված էր ամենայն խնամքով։

— Նստիր,— առաջարկեց Ռաֆայելը, ցույց տալով բազմոցը։

— Մենք երկուսո՞վ ենք ճանապարհորդելու,— հարցրեցի ես։

— Հը՛մ... այո՛...— մի փոքր շփոթված պատասխանեց նա։

— Ինչպե՞ս...

Առանց ուշադրություն դարձնելու իմ հարցին, Ռաֆայելը հանեց ժամացույցը։

— Երկու րոպե հետո ստարտը կտրվի,— կիսաձայն ասաց նա։

Ես շունչս պահեցի։

Քանքանյանը սեղմեց ինչ-որ կոճակ։ Պատերը շարժվեցին ու կորան հատակի տակ։ Արևի ճառագայթները լույսով ողողեցին հրթիռի ներսը։ Թափանցիկ լուսամուտներից երևում էին հրթիռակայանի կապույտ դրոշակները։

— Եվս երեսուն վայրկյան...— աչքը ժամացույցից չկտրելով, ասաց Ռաֆայելը։

Ես նկատեցի, որ դրսի առարկաները հսկայական արագությամբ սկսեցին ետ սլանալ։

Ստարտը տրված էր։

Մեր հրթիռը նետվեց տիեզերքի անհունության գիրկը։

Ռաֆայելը ծանր շնչեց ու նստեց բազմոցին։

— Վերջապես,— ասաց նա ժպտալով։— Շուտով մենք մի փոքրիկ պտույտ կկատարենք Լուսնի շուրջը։

— Իսկ վայրէջք կգործե՞նք։

— Ոչ։ Մեր հրթիռը Լուսնի մակերևույթից մոտ երկու հարյուր մետր բարձրության վրա կպտտվի ու ետ կվերադառնա։

...Երկրագունդը արագորեն ետ էր մնում։ Մենք վաղուց էինք անցել տրոպոսֆերայի[1] 11 կիլոմետրանոց շերտը։ Տուշի պես սև երկնակամարում փայլում էին տիեզերքի բնակիչները՝ աստղերը։

— Ե՞րբ կլինենք Լուսնի վրա,— անախորժ լռությունը խզելու համար, հարցրեցի ես։

— Մենք առաջ ենք սլանում տասնինն հազար կիլոմետր—ժամ արագությամբ,— պատասխանեց Ռաֆայելը։— Դա ամենամեծ արագությունն է,

---

[1] Տրոպոսֆերան երկրի մթնոլորտի վարի շերտն է, որ առաջանում են ամպերը, մթնոլորտային տեղումները, ամպրոպները և այլ բազմաթիվ երևույթներ։

որին կարողացել են հասնել մեր կոնստրուկտորները։ Քանի ժամ հետո մենք կլինենք Լուսնի վրա։

— Իսկ ինչո՞ւ մենք ոչ մի ցնցում չզգացինք երկրագունդը թողնելիս,— հարցրեցի ես։

— Ցնցո՞ւմ... հըմ... դա նշանակություն չունի։ Շուտով մենք դուրս ենք գալու երկրի ձգողական ուժի սահմաններից։

Մենք շարունակում էինք առաջ սլանալ։ Ներքևում երևում էր մի մեծ, լուսավոր գունդ։ Նրա վրա տեսանելի էին մայր ցամաքների ու աշխարհամասերի աղոտ ուրվագծերը։

Մտքումս վերջին անգամ հրաժեշտ տալով հարազատ մոլորակին, ես պատրաստվեցի դիմավորելու անկշիռ աշխարհի անհաճո սյուրպրիզներին։

Ժամերը թռչում էին իրար ետևից։

— Մի՞թե մենք դեռևս դուրս չեկանք ձգողական դաշտից,— անհամբերությամբ հարցրեցի ես։

— Ոչ միայն դուրս եկանք, այլև քիչ հետո կսկըսենք սավառնել Լուսնի երկնակամարում.

— Հապա ինչո՞ւ չզգացվեց ձգողական ուժի բացակայությունը։

Ռաֆայելը դա բացատրեց նրանով, որ այդ տեղամասում հրթիռին հաղորդվում է սեփական առանցքի շուրջը պտտվելու ունակություն և առաջացած կենտրոնաձիգ ուժի շնորհիվ առարկաները իրենց կշիռը չեն կորցնում։

... Այժմ երկրագունդը անցել էր մեր գլխավերևը, իսկ ցածում երևում էր մի արծաթագույն սկավառակ, որն արագորեն մեծանում էր։

— Ահա և Լուսինը,— ասաց Ռաֆայելը։

Քիչ հետո սկսեցին պարզ կերպով երևալ նրա կրկեսները։

Լուսնային պեյզաժի վրա ես անմիջապես տարբերեցի Երատոսթեն կրկեսը։ Հույն փիլիսոփայի անունը կրող այդ սարը Երկրագնդից հեռադիտակներով դիտելիս, իսկապես, որ նման է կրկեսի։ Բայց այժմ, մոտ երեք հազար մետր բարձրությունից նա նման էր մի հսկայական օղակաձև սարի, որի կենտրոնում գտնվում է մի բլուր։

Հրթիռը սկսեց վայրէջքը և երկու հարյուր մետր բարձրությունից շարունակեց իր պտույտը Լուսնի շուրջը։

Հեռվում երևաց մի մեծ սար, որի ծայրը կորչում էր հորիզոնի հետևում։

— Ուղիղ պատն է,— ասաց Ռաֆայելը, զգալով, որ ես դժվարանում եմ այն ճանաչել։

— Մի՞թե սա է ուղիղ պատը,— զարմացա ես, որովհետև Լուսնի քարտեզի վրա այդ հսկայական սարը լոկ մի փոքրիկ գիծ է։

Ես դեռ չէի սթափվել լուսնային լանդշաֆտի անընդհատ փոփոխվող տեսարաններից, երբ շրջապատը սկսեց մթնել։

— Մենք թռչում ենք Լուսնի հակառակ կիսագնդի վրայով,— ասաց Ռաֆայելը։

Երևացին ինչ-որ կրկեսներ ու սարեր, որոնք չնայած անծանոթ էին, բայց ոչնչով չէին տարբերվում առաջվաններից։

Լուսնի այդ կեսը մինչև այսօր անտեսանելի էր մնացել աստղագետների համար։ Դա հետևանք է այն բանի, որ Լուսինը միշտ մի կեսով է դարձած լինում դեպի Երկրագունդը։

Ես, ճիշտն ասած, շատ հպարտացա այն մտքից, որ Լուսնի անտեսանելի կեսը առաջին անգամ տեսնողներից մեկն եմ։

Մտքերից ինձ սթափեցրեց Ռաֆայելը։

— Այժմ լրիվ հաստատվեց, որ Լուսինը լուսին չունի։

— Այդ ինչպե՞ս հասկանալ։

— Շատ գիտնականներ ենթադրում էին, որ Լուսինն էլ իր հերթին պետք է լուսին ունենա։ Բայց չի երևում այն պատճառով, որ թույլ չեն տալիս արեգակի ճառագայթները։ Այժմ կարող ենք համոզված ասել, որ դա սխալ ենթադրություն է։

Լուսնի երկնակամարի վրա երևաց մի մեծ ու փայլուն սկավառակ։

«Երկիրն է»,— անմիջապես գուշակեցի ես։

Երկրագունդը հորիզոնի վրա շարժվում էր չափազանց տարօրինակ ուղեծիրով։ Ես բլոկ-նոտի մեջ գծեցի նրա անցած ուղին և ստացվեց ահա այսպիսի պատկեր.

— Կես ժամ հետո մենք կսկսենք վերադառնալ Երկիր,— ասաց Բանիբանյանը։

— Այդքան շո՞ւտ,— նկատելի հուզմունքով հարցրեցի ես։

— Մենք արդեն քանի ժամ կլինի, որ թռչում ենք... Իսկ դու լավ չես սնվում։ Թռիչքի ժամանակ ամենակարևոր պայմանն է լավ սնունդը,— ասաց Ռաֆայելը ու բացելով հրթիռի պատի մեջ հարմարեցրած պահարանը, սեղանի վրա սկսեց շարել ամեն տեսակի չոր ու խտացրած ուտեստեղեններ։

Տիեզերքի մթին անկյուններից մեկում մեր նախաճաշը բավականին հաճելի էր։

Երկրագունդը աստիճանաբար մեծանում էր։ Մենք մոտենում էինք հարազատ մոլորակին։

Թռիչքի վերջին ժամերը թվում էին չափազանց երկար։

*Վերջապես, ցածում երևացին Վոլգայի գեղեցիկ ժապավենը, Աստղագետների քաղաքի հրթիռային կայանը և առաջ վազող մարդկանց խմբերը։*

*Հրթիռը վայրէջք գործեց։*

*Ռաֆայելը փակեց լուսամուտները և բացելով դուռը, առաջարկեց դուրս գալ։*

*Ես արդեն մտքումս կազմում էի այն ճառի նախադասությունները, որ պետք է արտասանեի հրթիռից դուրս գալուն պես, միկրոֆոնի առաջ։*

*Բայց… ես ինձ գտա ոչ թե հրթիռակայանի ընդարձակ դաշտում, այլ… Բանքանյանի առանձնատան աշակերտական միջանցքում։*

*Ռաֆայելը ծիծաղեց։*

*— Գնանք առանձնասենյակ,— առաջարկեց նա,— այնտեղ ամեն ինչ կպատմեմ։*

*— Մենք ոչ միայն Երկրագնդի, այլև առանձնատան սահմաններից դուրս չեկանք,— ասաց Ռաֆայելը, նստելով բազկաթոռին։*

*— Չեմ հասկանում,— շփոթված ու ներքին տագնապով, ասացի ես։*

*— Մեր հրթիռը տեղից անգամ չի շարժվել։*

*— Բայց չէ՞ որ մենք Լուսնի մյուս կեսի վրա շրջեցինք, տեսանք…*

*— Չեմ ժխտում։ Դեպի Լուսին, իսկապես, որ թռիչք կատարվեց։ Բայց այդ հրթիռի մեջ ոչ ոք չկար։ Հրթիռը ղեկավարվում էր ռադիոալիքների միջոցով՝ աստղադիտարանից։ Նա սարքավորված էր գերհզոր հեռուստատեսական ապարատներով և տիեզերքի միջով դեպի մեզ էր ուղարկում էլեկտրական աչքի առաջ գտնվող բոլոր առարկաների պատկերները։ Ես որոշեցի այդ տեսհաղորդումները ընդունել ոչ թե հարթ էկրանի, այլ նույն հրթիռի մոդելի պատերի վրա։ Եվ խնդրեմ, մենք երկրագնդից ոչ մի տեղ չհեռացանք, բայց ստացվեց այնպիսի տպավորություն, թե մենք 51 ժամ անընդհատ թռիչք ենք գործել։*

*Այդ հայտնությունը ինձ այնպես շփոթեցրեց, որ ես երկար ժամանակ չէի կարողանում կանոնավորել մտքերս։*

*— Հեռուստատեսության միջոցով ավելի է հեշտացվում մեր տիեզերական ճարևանների ուսումնասիրությունը,— շարունակեց Ռաֆայելը։— Հավանաբար, մենք շուտով հրթիռը կուղղենք դեպի Մարս։*

*— Ուրեմն, այլևս կարիք չկա՞ մարդատար հրթիռ կառուցելու…*



*— Ոչ, ինչո՞ւ… Մինչև տեսահրթիռի Մարս ուղարկելը, կավարտվեն մարդատար հրթիռի նախապատրաստման աշխատանքները և մենք կտեսնենք ու կուսումնասիրենք իրական Մարսը։*

*— Հետաքրքիր է։*

*— Այո։ Կարծում եմ՝ դու բավականին համարձակություն կունենաս մեզ հետ ճանապարհորդելու։*

*— Իհարկե,— բացականչեցի ես հուզված,— ես… մեծ հաճույքով։*

*— Ուրեմն պատրաստվիր։*

# Իմ ցանկությունը

ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ

Մի օր գյուղի դարբնոց մտա.
— Բարև, քեռի Մարտիրոս…
Զբաղված էր դարբինը շատ,
Գլխով արեց ինձ անխոս:
— Ֆո՜ւ-հա՛, ֆո՜ւ-հա՛,— փուքսն է երգում,
Ելնում, իջնում է բոցը,
Մուրճի հարվածն է զրնգում,
Երգում է ողջ դարբնոցը:
Հենց իջնում է մուրճը հսկա,
Անթիվ կայծեր են թռչում,

Դեռ չհասած գետնին, ահա,
Անհետանում են, հանգչում:
Ես նայում եմ շատ ուշադիր՝
Դարբինն երկաթ է ծեծում,
Ո՞վ չի սիրի լավ վարպետին,
Այնքա՜ն եմ ես նախանձում:
Ցանկությունս ձեզ պարզ ասեմ՝
Դարբին դառնալ եմ ուզում,
Ե՛ս սովորեմ, պիտ աշխատեմ
Ես մեր գյուղի կոլխոզում:

# ՄԵԾ ԵՂԲԱՅՐԸ

ՀԱՅԿ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Լոռիկը բակում գնդակ էր խաղում:

—Մեկ, երկու, երեք, չորս, հինգ...—ավելին չէր ստացվում, գետինը անհարթ էր: Գնդակը խաբում էր նրան:

Նրա մեծ եղբայրը՝ Համիկը, մտածկոտ մի տղա, ուռած պայուսակը ձեռքին, դպրոց գնալու համար բակ դուրս եկավ: Անցնելիս, նա հանկարծ նկատեց, որ պատուհանները ապակուց են, իսկ գնդակը ցատկում է: Նա կանգ առավ, մտածեց, ապա մոտիկ կանչեց քրոջն ու խրատեց.

—Տանը ոչ ոք չկա. դու ինչ էլ անես, քեզ ոչ ոք չի տեսնի. այնպես որ պատուհանի տակ գնդակ չխաղաս, գնդակը կարող է դիպչել ապակիներին և ջարդել: Հետո ջարդված ապակու կտորով չկտրես լվացքի պարանը, որովհետև ամբողջ լվացքը կթափվի գետնին և կկեղտոտվի: Հետո կարող է խելքիդ փչի՝ գնաս հայրիկի գրասեղանի տակից հանես մեծ շշով թանաքը և թափես լվացքի վրա: Ամբողջ շորերը այնպես կկեղտոտվեն, որ... Զմոռանամ... որ պարանին հասնես, հարկավոր է սենյակից մի աթոռ բերել և կանգնել վրան... Հա, իսկ թանաքոտված և կեղտոտ շորերը նորից մաքրելու համար պետք է վառել կերոսինկան: Բայց կերոսինկայի մեջ նավթ չկա... Պետք է նավթ լցնել: Եթե նավթը թափվի հատակին, չի կարելի լուցկի վառել, թե չէ հրդեհ կառաջանա: Հետո անպայման պետք է զանգահարել 0-1: Զայրվելու համար պետք է տնից դուրս փախչես: Հասկացա՞ր:

—Հասկացա,—ասաց Լոռիկը:

Երբ մայրիկը շուկայից տուն վերադարձավ, տեսավ ի՜նչ... Ապակին ջարդված, պարանը կտրված, լվացքաշորերը ցեխոտ ու թանաքոտ, խոհանոցի հատակին նավթի լճակ...

Լավ էր, մայրիկը լուցկիները թաքցրել էր...



# ՎԶԿԱՊԻ ԲՈՂՈՔԸ

Ս. ՄԿՐՏՉՅԱՆ

Զարթնեց Կարենն
Առավոտյան
Ու ինչ տեսնի՝
Պապի նման,
Դեմքով խոժոռ,
Լեզվով հատակ,
Իր վզկապն է
Խոսում տաք-տաք.
—Ո՞նց համբերեմ
Ես, ա՛յ Կարեն,
Ամաչում եմ
Քո փոխարեն:
Ի՞նչ ես կպել
Մեր՛ուժանից,
Փողոցային
Այդ խուժանից:
Հենց որ նրան
Ընկերացար,
Գիրք ու տետրակ
Դու մոռացար:
Մի լավ նայիր
Բոյիդ-բուսիդ,
Մրոտ քթիդ
Ու երեսիդ:
Տրամվայի
Պոչից կպած՝
Սլանում ես
Դու գլխաբաց:
Թափառում ես
Ողջ քաղաքում,
Հայհոյում ես,
Ծխում, թքում...
Չէ՛, սա վարք չէ
Պիոների.
Այսուհետև
Քեզ չեմ ների:
Թե որ պիտի
Լինես այդպես,
Լավ է՝ դու ինձ
Էլ չկապես...

# «ԴԵՐՁԱԿԸ»

Մ. ԿՈՐՅՈՒՆ

Վարպետի հետ մրցել եմ,
Տապիկ կարել, պրծել եմ,
Մնացել է երկու կող,
Ու երկու թև, երկու օղ...

Դեռ փեշերը չեմ կարել,
Կոճակները չեմ շարել,
Չկա դերձակ ինձ նման
Ես վարպետ եմ խիկարյան;



# Ռուսական ՆԱՎԵՐԸ

Մ. ՍՈՆԿԻՆ

Նկ. Պ. ՄԱԼԱՅԱՆԻ

Վանդակի վրա, որի մեջ ապրում է կապիկը, մի փոքրիկ տախտակ բացատրում է. «Այս կապիկը համադրիլ է, նրա հայրենիքը Արաբիան է, նրան կոչում են Յաշա»։ Հեռավոր նավարկության նավապետը, տարիքավոր մի ծովային, ձեռքը խոթեց վանդակից ներս։ Յաշան նրա ձեռքից վերցրեց շոկոլադը, ապա արագորեն թուղթը առանձնացնելով, շոկոլադի շերտը ջարդեց, դարձրեց երկու կես, մի մասը արագ կուլ տվեց, իսկ երկրորդը տվեց նավապետին։

— Բոլորը քեզ,—ասաց ծովայինը և շոյեց կապկի քնքույշ մորթը։

— Նավապետ բեռի, դուք առա՞ջ էլ գիտեիք Յաշային։ Իսկ ինչո՞ւ է այս կապկի անունը ռուսական։

***

(… Սովետական «Միվաշ» շոգենավը կանգնած էր Ադեն նավահանգստում, անգլիական գաղութի կենտրոնում, որն ընկած է Արաբական թերակղզու հարավային մասում, Եվրոպայից դեպի Հնդկաստան և Չինաստան տանող ջրային մեծ ուղու վրա։ Ադենում «Միվաշը» լրացրեց մթերքի, ջրի և քարածխի պաշարները։

Այդ նավահանգստում նավերն ածխով բեռնելու համար մեքենաներ չեն օգտագործվում։

— Մեզ մոտ բավական շատ կենդանի բանվորական ձեռք կա՝ էժան և հնազանդ,—ասում են նավահանգստի տերերը։

Փոքրիկ բուքսիրային շոգենավերը սովետական նավին մոտեցրին երկու բեռնանավ, մեկը՝ ածխով, մյուսը՝ մարդկանցով լիքը։ Մարդիկ երեք հարյուր հոգի էին՝ տղամարդիկ, պատանիներ և նույնիսկ երեխաներ։ Բեռնակիրները բեռնանավից մինչև «Միվաշի» նավեզրը կազմել էին կենդանի կոնվեյեր և ձեռքից-ձեռք էին հանձնում ածխի զամբյուղները։

Կեսօրին մոտ բեռնակիրների շղթայից դուրս եկավ ինը տարեկան մի փոքրիկ տղա։ Նա ցատկեց մյուս բեռնանավը, վերցրեց փոքրիկ զամբյուղը և վեր բարձրացավ։ Նրա ետևից հնազանդորեն վազում էր մի գորշավուն կապիկ։

Նավակամատույցում տղան ընտրեց մի հարմար տեղ և սկսեց ճաշ պատրաստել։ Նա զամբյուղից հանեց հաց, սոխ, սխտոր, պահածոյի դատարկ տուփեր…



Շոգենավը բեռնող տարիքավոր արաբների նման, տղան նույնպես կիսամերկ էր։ Փոքրիկ արաբի ամբողջ մարմինը ծածկված էր կարմիր խոցերով։ Տղան նստել էր գետնին։ Նա կտրելով հացը, երգում էր ինչ-որ միալար ու տխուր մի երգ։

— Դա ո՞ւմ տղան է,—հարցրեց բեռնակիրներին նավապետի երկրորդ օգնական Յուրի Կիրյանովը։

— Մեր Ռահիմն է,—անգլերեն պատասխանեց բեռնակիր արաբը։— Նրա հայրը աշխատում էր մեզ հետ։ Նա հիվանդացավ և մեռավ։ Մայրը ավելի վաղ է մեռել։ Մենք չքեցինք Ռահիմին, բայց դժվարանում ենք նրան կերակրել։ Դրա համար էլ նա օգնում է մեզ, մեկ ածուխ է բարձում, մեկ՝ ճաշ պատրաստում։

Տղայի ճակատագրի մասին պատմությունը լսեց նաև «Միվաշի» նավապետը, հին կոմունիստ, քաղաքացիական կռվի մասնակից, փորձված ղեկավար Աֆանասի Նիկոլաևիչ Տեբենտեր, որը սովետական նավերը վարել է համարյա թե երկու կիսագնդերի բոլոր ծովերով։ Ծովայիններն արդեն նկատել էին, որ նավապետն անտարբեր չի երեխաների նկատմամբ։

— Ռահի՛մ,—կանչեց նա տղային։

Տղան անվճռական կերպով մոտեցավ նավապետին։

Ադենում վարժվել էին, թե ինչպես են սպիտակ մարդիկ՝ անգլիական և ամերիկյան ծովայինները, սիրում զվարճանալ՝ շնաձկներով վխտացող Ադենի ծովածոցի թափանցիկ ջրերի մեջ դրամներ նետելով։ Նրանք ստիպում են քաղցած և անտուն երեխաներին սուզվել ջուրը՝ փողերը հանելու։

Ռահիմը մտածում էր, որ այդ սպիտակ նավապետն էլ ուզում է, որպեսզի նա սուզվի՝ դրամն հանելու։ Բայց Աֆանասի Նիկոլաևիչը, իմանալով, որ Ադենի երեխաները լավ են ճանաչում տարբեր երկրների դրոշակները, ձեռքով ցույց տվեց «Սիվաշի» նավային դրոշակը։

Տեսնելով սովետական դրոշակը, Ռահիմը վճռականորեն առաջ գնաց։ Իսկ նրա ետևից, ինչպես միշտ, վազեց փոքրիկ կապիկը։

— Ահա թե ինչ, Ռահիմ, ճաշ պատրաստիր, կերակրիր բեռնակիրներին և արի ինձ մոտ, նավ,— ասաց նավապետը տղային։

— Օ՜,— դուրս թռավ Ռահիմի կրծքից և նա գլխով համաձայնության նշան արեց.

...Մի օր հետո, Ռահիմը նավի վրա արդեն մեր մարդն էր։ Ծովայինները լողացրին նրան ջրցանի տակ, նավի բժիշկը մի քանի անգամ դեղ քսեց նրա մարմնի հիվանդ տեղերին։ Խոհարարը տղային հյուրասիրեց ռուսական ուտելիքներով։ Ռահիմը զգաց, որ դրանք սոխով և սառը ջրով հացից վատ չեն։

Յուրի Կիրյանովը և նրա կոմերիտական ընկերները Ռահիմի համար շալվար և զոլավոր շապիկ կարեցին։ Գտնվեց և նավաստու գլխարկ։ Պետք էր տեսնել, թե ինչ հպարտությամբ տղան նոր հագուստով կանգնեց բեռնակիրների արտելի իր ընկերների առաջ։

— Ես ռուս ծովային եմ,—գոչեց Ռահիմը, իր փոքրիկ ձեռքերը պահելով նավաստիական լայն շալվարի գրպաններում։

Քանի դեռ «Սիվաշը» կանգնած էր Ադենի նավահանգստում, բեռնակիրները այլևս ոչ մի անգամ Ռահիմին չուղարկեցին ածխի ծանր զամբյուղներ կրելու։ Նա միայն պատրաստում էր ճաշը։

Եկավ սովետական նավի մեկնելու պահը։ Ծովայինների պատանի բարեկամը այդ ժամանակ «Սիվաշի» տախտակամածի վրա էր։

— Դե, Ռահի՛մ, պետք է հրաժեշտ տանք իրար,— կանչեց նրան նավապետը։

Տղայի աչքերում արցունքներ երևացին։

— Իսկ մի՞թե ես ձեզ հետ... ես ամեն ինչ կանեմ... Ես ինձ լավ՝ եմ զգում ձեր մոտ... Դուք բարի եք,—ասաց Ռահիմը անգլերեն, դառնալով դեպի նավապետը։ Աղերսանքով և սպասումով նա նայեց նավապետի աչքերին։ Վերջինիս հայացքից Ռահիմը հասկացավ, որ այդ անկարելի է։

Այո, միջազգային օրենքները չեն թույլատրում այդ։

Ռահիմը իր մոտ կանչեց կապիկին, վերցրեց նրա ձեռքը և համբուրեց նավապետին։

— Ավելի լավ նվեր ես չունեմ...

Աֆանասի Նիկոլաևիչը տղային նվիրեց քաղցրավենիք և հրաժեշտ տվեց։ Ռահիմը գլխիկոր դանդաղ գնաց դեպի նավասանդուղքը։

Այդ ժամանակ նավեզրին երևացին անգլիական մաքսատան աստիճանավորները։ Նրանք պետք է ձևակերպեին մեր նավի Ադենից դուրս գալու փաստաթղթերը։ Տեսնելով արաբ տղային, աստիճանավորներից մեկը կոպիտ կերպով բռնեց նրա օձիքից և սկսեց քաշել։

Կայծին նտառ կապիկը մի ակնթարթում ցատկեց և ճիչով ցատկեց անգլիացու վրա։ Վերջինս կոշիկով հարվածեց կապիկին։ Նրա վերին շրթունքը պատռվեց։ Սուր ճիչ արձակելով, նա թաքնվեց նավախելում։

Դեռ շատ օրեր «Սիվաշ» շոգենավը գտնվում էր նավարկության մեջ։ Նավի բժիշկը բուժեց կապիկին և սա արագ առողջացավ, դարձավ ամբողջ անձնակազմի սիրելին։ Ծովայինների միահամուռ ցանկությամբ՝ նրան Յաշա ռուսական անունը տվին։

Երբ «Սիվաշը» եկավ հայրենի ափերը, ծովայինները կապիկին բերեցին Լենինգրադի կենդանաբանական այգի։

Ամեն անգամ, երբ «Սիվաշը» ժամանում է Լենինգրադ, նավապետ Տերենտևը մտնում է կենդանաբանական այգի։ Եվ Յաշան միշտ էլ ճանաչում է նրան։



# Գյուղացին և իշխանը

ՀԱՄԼԵՏ ՀԱՐՅԱՆ

(Ժողովրդական)

Նկ. Հ. ՌՈՒԽԿՅԱՆԻ

Ասում են հնում ապրում էր մի ծեր՝
Աշխույժ, բանիմաց ու շատ հյուրասեր։
Եվ ծերուկն ուներ մի սովորություն.
Ով որ փորձ աներ հյուր գալ նրա տուն,
Լիներ թե իշխան և թե գյուղացի,
Աշխատեցնում էր, նոր կանչում հացի։

Օրերից մի օր ջահել մի իշխան
Վճռում է ելնել, հյուր գնալ նրան,
Բայց իրեն պահել ուշիմ ու զգոն,
Եվ ոչինչ չանել գեղջուկի խոսքով,
Որ, ոչինչ չարած, գեղջուկն իր տնից
Լավ հյուրասիրած ճանապարհ դնի։

Զարմիկ, ոսկեշող նժույգը նստած՝
Քշում է ուժին ու խելքին վստահ,
Իջնում առջևը գեղջկական հյուղի,
Նժույգը կապում ուռենու ճյուղին։

Ծերը կտուրից նորաշեն իր տան
Ջերմ ու սրտաբաց ձայնում է նրան.
— Բարով ես եկել, իմ աչքի վրա,
Աստծունն է հյուրը, մենք՝ ծառան նրա,



Ասված բարին տա, հալա մի վեր եկ, —
Կտուր է կանչում հյուրին հոգնաբեկ։
Ծերը որդու հետ կտուրին այդ նույն
Հող էր շաղ տալիս, քայլում, պնդացնում։

Հյուրը ելնում է կտուրը նոր տան,
Չմոռանալով իհարկե և այն,
Որ իրեն պետք է միշտ պահի զգոն,
Երբեք չբանի գեղջուկի խոսքով։
Գեղջուկն էլ, ինչ խոսք, իր նորեկ հյուրին
Հո չէ՞ր բանեցնի շենքի կտուրին։
Նա զրուցում է հետը հարգալից,
Եվ կտրան վրա գնում են, գալիս։

Աչքով է անում ծերուկն իր որդուն,
Որ ասել է թե՝ դու հողը շաղ տուր։
Ու խոսեցնելով մեծապարծ հյուրին՝
Տանում է բերում իր տան կտուրին.
Տանում է բերում ծերուկը նրան,
Քիչ-քիչ պնդացնում տանիքը նոր տան։

Հետո իջնում են, նստում են խալուն,
Ուտում են, խմում, նարդի են խաղում,
Եվ իշխանազնը գնալու պահին
Այսպես է դիմում իր հյուրընկալին
— Ճիշտն ասած, հայրիկ, ես շատ լսել էի
Քո տարօրինակ վարմունքի մասին։
Գնամ մի տեսնեմ, մտքումս ասացի,
Ի՞նձ էլ, չբանած, հացի չի կանչի։
Դե հիմա, ասա, ինչպե՞ս պատահեց,
Որ չճամփեցիր ինձ էլ նրանց պես։
— Ջահել ես, որդի, շատ ես շտապել,
Քո էգ արշինով ես շատ եմ չափել։
Ասում ես... Հապա էն ով էր հյուրին
Ման ածում իր հետ իր տան կտուրին,
Ուրիշներն էստեղ այգում են բանել,
Ես քեզ մինչև իսկ կտուրն եմ հանել,
Ուրիշներն էստեղ բանել են ձեռքով,
Դու ոտքով անգամ բանեցիր էսօր։
Դե գնա, թող քեզ խրատ լինի սա,
Որտեղ քոնն ասես, իմն էլ հետն ասա...

# ԵՐԵԽԱՆ ՈՒ ԻՄԱՍՏՈՒՆԸ



(Չինական ժողովրդական հեքիաթ)

Նկ. Տ. ԹՈՔՄԱՋՅԱՆԻ

Արևոտ օր էր։ Կառքով անցնում էր մի իմաստուն ու մտածում։ Հանկարծ կառքը կանգ առավ։ Իմաստունը թեքվեց կառքի միջից ու ճամփի մեջտեղը տեսավ մի փոքրիկ տղայի, որը խաղում էր խեցեղենի կտորտանքի հետ։ Նա քաղաք էր կառուցում։

Տղան նայեց կառքին, բայց ճամփից չուզեց դուրս գալ։

— Ի՞նչ է, փոքրիկ, չե՞ս ուզում թողնել, որ իմ կառքն անցնի,— ասաց իմաստունը։

Փոքրիկ տղան չափչփեց նրան ներքևից վերև ու պատասխանեց.

— Կարևորը ես չեմ, պարոն։ Դուք տեսնում եք, որ ես քաղաք եմ շինում։ Ոչ թե քաղաքի պատը պետք է ճամփա տա կառքին, այլ կառքը շրջանցի քաղաքի պատը։

Այդ պատասխանը զարմացրեց իմաստունին։ Նա իջավ իր կառքից, մոտեցավ տղային ու ասաց.

— Լսիր, փոքրիկ, դու ինձ քո հասակի համեմատ անսովոր խելոք ես թվում։

Տղան պատասխանեց.

— Ինչո՞ւ, նապաստակը իր կյանքի երրորդ օրը կարող է փախչել ու ցատկոտել դաշտերում, իսկ ես, որ յոթ տարեկան եմ, չե՞մ կարող մի երկու բան իմանալ։

Իմաստունը ժպտաց, ապա հարցրեց.

— Կարո՞ղ եմ քեզ մի քանի հարց տալ։ Եթե պատասխանես, այն ժամանակ ես կհամարեմ, որ դու իրոք խելացի ես։

— Ես պատրաստ եմ,— ասաց տղան։

— Այն ժամանակ,— ասաց իմաստունը,— ասա ինձ՝ ո՞ր կրակից ծուխ դուրս չի գալիս. ո՞ր ջրում ձուկ չի լինում. ո՞ր սարում քար չկա. ո՞ր ծառին տերև չեն բուսնում։

Տղան մտածեց ու պատասխանեց.

— Լուսատտիկի կրակից ծուխ դուրս չի գալիս. աղբյուրի ջրում ձուկ չի լինում. քամու հավաքած ավազաթմբում քարեր չեն լինում. փթած ծառի վրա տերև չեն բուսնում։

Իմաստունը հիացմունքով էր լսում երեխայի պատասխանները։ Բայց նա դեռ մի խոսք չէր կարողացել ասել, երբ տղայի աչքերը փայլփլեցին։ Խորամանկ ժպտալով նա ասաց.



— Իսկ ես կարո՞ղ եմ ձեզանից մի բան հարցնել.

— Հարցրու,— պատասխանեց իմաստունը։

— Բայց մի պայմանով. եթե դուք չպատասխանեք, պիտի շրջանցեք խեցեղենից շինած իմ քաղաքը։

— Շատ լավ,— ժպտալով ասաց իմաստունը։

— Ասացեք՝ քանի՞ աստղ կա երկնքում։

— Սիրելի փոքրիկ,— ասաց իմաստունը,— ինչո՞ւ ես այնպիսի բաների մասին հարցնում, որ այնքան հեռու են մեզանից։ Հարցրու նրանց մասին, որ մեզ ավելի մոտ են, և ես քեզ կպատասխանեմ։

— Այն ժամանակ,— շարունակեց տղան,— ասացեք ինձ, խնդրեմ, թե քանի՞ մազ կա ձեր հոնքերին։

Իմաստունը ծիծաղեց։ Այ քեզ բա՜ն։ Փոքրիկ երեխան իրենից ավելի խորամանկ դուրս եկավ։

Ժպտալով նա բարձրացավ իր կառքը և հրամայեց կառապանին շրջանցել տղայի կառուցած քաղաքը։

Ռուս. թարգմ. Գր. ԱՐԵՅԱՆ



# ԹԱՆԿԱԳԻՆ ԳԱՆՁԸ

Ա. ՇԻՐՈՅԱՆ

Աշխատասեր մի այգեպան
Այգի դարձրեց հողն իր խոպան
Ու վերահաս մահվան օրին
Կանչեց իր ծույլ որդիներին.
— «Ով զավակներ,— ասաց նրանց,—
Չլքեք այս հողն իմ սիրած.
Այստեղ գանձ կա ոսկի թասում,
Թե որտեղ է՝ ձեզ չեմ ասում։
Ով որ խորը՛ փորի հողը,
Նա կլինի գանձ գտնողը»։
Ասաց, մեռավ։ Որդիները
Կարծեցին, որ իրենց հերը
Մեծ գանձ ունի հողում թաղած.
Եվ ծույլ, անգործ կյանքը թողած,
Մեծ եռանդով կպան գործի,
(Ո՞վ չի ուզում բախտն իր փորձի)
Աշխատեցին ամբողջ տարին,
Այգին տվեց բերքն ու բարին,
Լցրեց մառանն ու տները։
Նոր հասկացան որդիները,
Ի՛նչ գանձ ունի իրենց հողը։
Աշխատանքն է գանձ տվողը։

# ՊԱՐԾԵՆԿՈՏԸ



Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ

Ծառի ճյուղին մի խենթ մոծակ
Պար էր գալիս ու ցնծում,
Հանկարծ տեսավ դաշտում արձակ
Մի սև ձի է արածում,
Էլ չսպասեց, թևին տվեց,
Կտրեց ճամփան տհագին,
Երգը շուրթին՝ հասավ նստեց
Ձիու չաղլիկ գավակին..,

Նկ.. Վ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ

Ժիր մրջյունը այդ նկատեց,
Նայեց, նայեց զարմացած,
Փորձի համար գործն ընդհատեց,
Առաջն ելավ ու ասաց.
— Կանգ առ խոսենք, մոծակ ախպեր,
Ո՞ւր ես այդպես սլանում,
— Չէ՛, քույր մրջյուն, պարապ չեմ դեռ,
Ձիս պայտելու եմ տանում;

# ԿՐՈՍՎՈՐԴ



Դիտե՛ս արդյոք քարտեզը:

Այս կրոսվորդի հարցերը տրված են քարտեզների միջոցով: Առանձին քարտեզների վրա գտեք հարցականով նշանակված աշխարհագրական վայրերի անունները և դրանք տեղադրեք կրոսվորդի մեջ:

Հորիզոնական



Ուղղահայաց



## ԺԱՄԱՆՑԻ ԿՈՆԿՈՒՐՍԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ

*1956 թ. հունվարից մինչև նոյեմբեր ամիսը անցկացված կոնկուրսի խնդիրների պատասխանները.*

*«Դիրներ» № 1*

«Ում դիմանկարն է». — *Խաչատուր Աբովյանի:*

*«Դիրներ» № 2*

«Կատուն ու մկները». — *Կատուն պետք է սկսի հաշվել սպիտակից հետո ժամացույցի սլաքի ուղղությամբ վեցերորդ մկից:*

«Գտեք ազգանունները». — *Պետյա Կոչոլյով, Վիտյա Սմիրնով, Սաշա Վոլկով, Կոլյա Վասիլյով:*

«Մի փոքր մտածիր». — *Յուրաքանչյուր նկարի վրա գտնում ենք երեքական ֆիգուրա: Մյուս երկու ֆիգուրաներին դեռ ձեռք չենք տալիս:*

*1-ին գելք. Նկարները համասար չեն: Թեթև նկարի վրայի երեք ֆիգուրաներից երկուսը կրկին ենք կչռում: Եթե նկարները համասար են, ուրեմն թեթևը երրորդ ֆիգուրան է:*

*2-րդ գելք. Նկարները համասար են: Ուրեմն թեթևը մնացած երկուսից մեկն է: Երկրորդ կչռումը կատարելով գտնում ենք թեթև ֆիգուրան:*

*«Դիրներ» № 3*

«Վիկտորինա». — *Վեներա — Երևան*

«Կարո՞ղ ես արդյոք»



«Գծերի օգնությամբ»



«Պիոներ» № 4

«Կարող ես արդյոք»



«Բաժանիր չորս մասի»



«Վիկտորինա». — 1. Այվազովսկին, 2. Սավիցկին, 3. Սավրասովը, 4. Ռեպինը, 5. Բրյուլովը, 6. Ռեպինը, 7. Վասնեցովը, 8. Պերովը, 9. Կուկրինիկսի՝ Կուպրիանով, Կռիլով, Սոկոլով, 10. Ռեշետնիկովը։

«Պիոներ» № 6

«Երաժշտական վիկտորինա».—1. Նովիկով, 2. ջութակ, թավջութակ, կոնտրաբաս, վիոլա, ալտ. 3. Պրոկոֆև, 4. Ռիմսկի-Կորսակով—«Ոսկե աքաղաղ». 5. Պուշկինի թեմաներով օպերաներ են գրել՝ Չայկովսկին («Եվգենի Օնեգին», «Պիկովայա դամա», «Մազեպա»), Ռիմսկի-Կորսակովը («Հեքիաթ Սալթան թագավորի մասին», «Ոսկե աքաղաղ», «Մոցարտ և Սալյերի»), Ռախմանինովը («Ալեկո», «Ժլատ ասպետը»), Մուսորգսկին («Բորիս Գոդունով»), Գլինկան («Ռուսլան և Լյուդմիլա»), Դարգոմիժսկին («Ջրահարսը»), Նապրավնիկը («Դուբրովսկի»)։

«Կարող ես, գտիր».—Հանգույց է ստացվում 3-րդ և 4-րդ նկարներում։

«Պիոներ» № 11

«Աշխարհագրական չայնվորդ» — 1. Ջոմոլունգմա, 2. Ամստերդամ, 3. Մելբուրն, 4. Նեղոս, 5. Սկոտտ, 6. Տանգանիկա, 7. անակոնդա, 8. Անտարկտիկա, 9. Ագրա, 10. արմավենի, 11. Իշիմ, 12. Մոնբլան, 13. Նիցցա, 14. Առնո, 15. օազիս, 16. Սոմալի, 17. Ինդոս, 18. Սատուրն, 19. Նանսեն, 20. Նեպալ, 21. Լիվինգստոն, 22. Նեպտուն, 23. Նեապոլ, 24. Լվով, 25. Վեզուվ, 26. Վիկտորիա, 27. Արաքս, 28. Սումատրա, 29. Արարատ, 30. տայֆուն, 31. Նանկին։

## ԿՈՆԿՈՒՐՍՈՒՄ ԱՌԱՋՆՈՒԹՅՈՒՆ ԵՆ ՇԱՀԵԼ

Սաշլըյան Սրբուհի (Բուլղարիա), Իսահակյան Ավիկ (Երևան), Աղավելյան Կոտիկ (Դիլիջան), Օհանյան Վրեժ (Երևան), Խաչատրյան Կառլեն (Բասարգեչար), Խաչատրյան Մանվել (Երևան), Եգանյան Էդվարդ (Արթիկ), Շաքարյան Իլյիչ (Ալավերդի, Ուզունլար), Հակոբյան Ռոբերտ (Իջևան, Վ. Աղդան), Գրիգորյան Լաուրա (Ղուկասյան, Ղազանչի), Մարտիրոսյան Ռոզա (Դիլիջան), Մելքումյան Ջուլիետա (Կրասնոսելսկ, Թոխլուջա), Օհանջանյան Լիլիկ (Լենինական), Խաչատրյան Լաուրա (Դիլիջան), Խաչատրյան Շավարշ (Շահումյան, Դավիթաշեն), Շահազիզյան Հենրիկ (Երևան), Շահնազարյան Տելեմակ (Դիլիջան), Հասանով Իրիգվան (Դիլիջան), Ղանդիլյան Ցոլակ (Լենինական), Մանասերյան Նորիկ (Ախտա), Սարգսյան Արազ (Կոտայք, Հրազդան), Սիմոնյան Աիդա (Լենինական), Սիմոնյան Լարիսա (Ստեփանավան), Պողոսյան Ռոբերտ (Դիլիջան), Կոստանդյան Դարրիկ (Ալավերդի)։

Ս. Սաշլըյանը և Ա. Իսահակյանը պարգևատրվել են գրականությամբ, իսկ մյուսները՝ «Պիոներ» ամսագրով՝ մեկ տարի և 6 ամիս ժամանակով։


**Խմբագրական կոլեգիա**

ԱՍԱՏՐՅԱՆ Օ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԵՍՅԱՆ Վ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս. (խմբագիր), ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՅԱՆ Պ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս. (գեղարվեստական խմբագիր), ՕՀԱՆՅԱՆ Ա.։

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса № 21.

Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06, 2—33—37

ՎՖ 01052, Պատվեր 1529, Տիրաժ 5000։ Տպագրական 4,5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 12 I 1957 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91։

Գինը 2 ռ.




## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Շապիկի առաջին էջը՝ Նկ. Գր. ԽԱՆՋՅԱՆԻ

Չորրորդ էջը՝ Նկ. Վ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ

Գործ եմ անում, բայց չեմ հոգնում.
Մայրիկիս եմ այսպես օգնում...

Թե չե ինքը ո՞ր մեկն անի,
Տա՞ն գործը, թե՛ գործարանի:

# ԹԵ ԻՆՉ ԵՂԱՎ, ԵՐԲ ԲՐԴՈՏ ԲԱԼԻԿԸ ՉԼՍԵՑ ՄԱՅՐԻԿԻՆ



1



2



3



4



5



6